



# ՄԵԾԵՐՆ ԱՅԴՊԵՍ ՉԵՆ ԽՈՍՈՒՄ

*ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ*

Երբ չէր գնում Նունեն դպրոց,
Իրենց կանաչ պարտեզում,
Փոքրիկ եղբոր՝ Արայի հետ
Խաղ էր անում, վազվզում։
Ամառն անցավ, սեպտեմբերը
Անուշ զանգով ողջունեց,
Ութ տարեկան Նունեին էլ
Զմռռացավ ու կանչեց։

Հագավ Նունեն սիրուն շորեր
Ու պայուսակը բռնած,
Առավոտյան, մայրիկի հետ,
Ուրախ՝ դպրոց նա գնաց։
Անցան օրեր, փոխվեց Նունեն,
Խաղ չի անում էլ դրսում,
Իրեն պահում է մեծի պես,
Մեծի պես է նա խոսում։

Երբ խաղում է տանը Արան,
Նունեն գիրքը դնում ցած,
Բարկանում է եղբոր վրա
Ու գոռգոռում զայրացած.
— Ինչու՞ մեծի չես լսում դու,
Խանգարում ես, ա՛յ Արա,
Տեսնում ես, ես դաս եմ սերտում,
Գնա, դրսում խաղ արա։—
Ծիծաղում է փոքրիկ Արան,
Պատասխանում է այսպես.
— Մեծն հայրիկն է ու մայրիկը,
Դու ի՞նչ մեծ ես, դու ի՞նչ մեծ...—
Ճիշտ է ասում Արան, Նունե,
Փոքրիկ ես, ութ տարեկան,

Եվ քեզ համար մեծանալու
Օրեր, դեռ շա՜տ, դեռ շա՜տ կան։
Հանգիստ խոսիր Արայի հետ,
Մեծերն այդպես չեն խոսում,
Եվ նրա հետ, ազատ ժամին,
Նորից խաղա պարտեզում։

*Նկ. ԲԱԳՐԱՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*



*ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

*Ամռանը ես ու Վանիկը գնացինք ճամբար։*

*Վանիկը, չգիտես որտեղից, մի ուսապարկ էր ճարել, ձեռքերը դրել էր գրպանները և այնպես էր երևակայում իրեն, որ միայն փորձեիր հետը խոսել։ Երևի իրեն արդեն մեծ ճանապարհորդ էր կարծում։ Մինչև անգամ ավտոբուսի մեջ չէր ցանկանում հանել։ Բայց երբ ասացի, որ լավ կլինի, եթե հենց ուսապարկով էլ քնեք, նա հանեց այն ու դրեց ոտքերի մոտ։*

*Մեր դիմաց երկու աղջիկ էր նստած։ Քիչ հետո նրանք սկսեցին երգել։ Վանիկը արմունկով խփեց կողքիս ու աչքով արեց։ Այսինքն՝ մի դըրա՜նց նայիր։*

*— Շատ են երևակայում իրենց,— ասում է նա,—*

ՍԵՊՏԵՄԲԵՐ
№ 9 1962 Թ.

ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

բոլորն էլ կարող են երգել, կարծես դժվար բան է:

Աղջիկները լսեցին ու ասացին.

— Մենք բոլորովին էլ չենք երևակայում: Միայն ուզում ենք երգել և վերջ:

— Դուք միայն գլուխ եք ցավեցնում, — ասում է Վանիկը:

— Իսկ դուք փակեցեք ականջներդ, — ասացին նրանք և շարունակեցին ավելի բարձր երգել:

Հետո բոլորն էլ երգում էին, իսկ ես ու Վանիկը լուռ նստել էինք: Ճիշտն ասած, ես շատ էի ուզում երգել, բայց ամաչում էի և հետո հո երեխա չէի՞:

Նայում եմ Վանիկին: Նա փչում է ապակու վրա, հետո մատով գծեր քաշում: Հետո նորից է փչում ու նորից գծեր քաշում: Երևի ձանձրանում է:

— Արի, — ասում եմ, — մենք էլ երգենք: Միևնույն է, մեր ձայնը ոչ որ չի լսի:

— Այդ էր պակաս, — ասում է Վանիկը, — մենք հո փոքր չե՞նք:

— Իսկ ինչո՞ւ փոքրը, — ասում եմ, — մեծերը ավելի լավ են երգում:

— Դե լավ, — համաձայնեց Վանիկը:



Երբ հասանք ճամբար, մեր ջոկատավար ընկեր Լևոնը ասաց, որ դասավորենք մեր իրերը և պառկենք հանգստանալու: Նա այդպես ասաց, իսկ Վանիկը . . . ուղիղ անտառ:

Քիչ հետո նա վերադարձավ: Ընկեր Լևոնը նրան նկատողություն արեց, որ այլևս ինքնագլուխ ոչ մի տեղ չգնա:

Ես պառկել եմ, իսկ Վանիկը ուսապարկը ծնկներին՝ նստել է մահճակալի վրա:

— Չեն թողնում մարդ ազատ շունչ քաշի, — ասում է նա, — այս մի՛ արա, այն մի՛ արա: Եթե իմանայի, չէի գա:

— Քեզ ոչ որ էլ չէր խնդրում, — ասում եմ, — այդ դու էիր շարունակ տզզում, թե՝ ճամբար եմ ուզում գնա՜լ, ճամբար եմ ուզում գնա՜լ:

— Ես բոլորովին էլ չէի տզզում: Ասացի՝ ճամբար եմ ուզում գնալ և եկա: Այդ դու էիր տզզում:

— Բարև ձեզ, — ասում եմ, — տզզում էիր ճանճի պես:

— Դե լավ, — ասում է Վանիկը, — ավելի լավ է, չկռվենք: Ես հենց այնպես ասացի:

Ճամբարում ամեն ինչ լավ էր գնում: Այնքան հետաքրքիր բան կար, որ ինձ ու Վանիկին նույնիսկ կռվելու ժամանակ չէր մնում:

Մի անգամ ընկեր Լևոնը ասաց, որ սրանից հետո մենք պետք է մաքրենք մեր վրանը: Ես ու Վանիկը խնդրեցինք, որ միասին հերթապահենք:

— Այնպես կմաքրենք, — ասում է Վանիկը, — որ բոլորի աչքերն էլ բաց մնան: Ախր, դա շա՜տ հեշտ է:

Շուտով եկավ մեր հերթը:

Դահլիճում կինոնկար էին ցուցադրում, և մեր վրանում ոչ որ չէր մնացել:

— Արի, — ասում է Վանիկը, — շուտ մաքրենք և գնանք դիտելու:

— Շտապելով ոչինչ դուրս չի գա, — ասում եմ, — պետք է լավ մաքրել:

— Կմաքրե՜նք, — ձեռքը թափ է տալիս Վանիկը, — ախր, դա շատ հեշտ է: Պետք է միայն ավելը շարժել՝ մե՛կ, երկո՛ւ և խնդրեմ, պատրաստ է:

Բերեցինք ավելները և սկսեցինք մաքրել:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

— Դու, ի՞նչ է,— գոռում է Վանիկը,— առաջին անգա՞մն ես ավել վերցնում ձեռքդ։

— Քե՞զ ինչ,— ասում եմ,— դու, խնդրեմ, մի՛ գոռա ինձ վրա։

— Ախր, ինչպե՞ս չգոռամ,— նորից է գոռում Վանիկը,— այդպես մինչև երեկո չենք վերջացնի, հարկավոր է արագ անել։ Դու գոնե ինձնից սովորիր։

Նայում եմ Վանիկին։ Նա այնպես ուժեղ և արագ է շարժում ավելը, որ նույնիսկ հողը քանդվում է։ Իսկ հետո մի այնպիսի փոշի բարձրացավ, որ ուղղակի անհնար էր շնչել։

Մեզ գցեցինք դուրս։

— Հարկավոր է ջուր շաղ տալ,— ասում եմ,— մայրիկը միշտ այդպես է անում։

— Դե, իհա՜րկե,— ասում է Վանիկը,— ո՞նց էի մոռացել։

Գնացինք խոհանոց։ Մի մորաքույր մեզ դույլ տվեց։ Մենք դույլը լցրեցինք ջրով և բերեցինք վրան։ Ես սկսեցի ջուրը ձեռքով շաղ տալ հատակին, իսկ Վանիկը ասաց.

— Դու սպասիր, ես հիմա,— ու սլացավ դեպի դահլիճ։

Քիչ հետո վազելով եկավ և ասում է.

— Հարկավոր է արագ անել, հիմա կինոնկարը կվերջանա։

Նա սկսեց դույլը թեքել։ Թեքեց, թեքեց ու մեկ էլ՝ թրը՜մփ, դույլը շուռ եկավ։ Ամբողջ ջուրը թափվեց։

— Դե,— ասում եմ,— ստացա՞ր։

— Իսկ դու ինչո՞ւ չօգնեցիր,— գոռում է Վանիկը,— միայն կանգնել ու նայում ես։

— Ես կարծում էի դու պինդ ես բռնել։

— Ես էլ էի կարծում,— ասում է Վանիկը,— բայց, ախր, շատ ծանր էր։

Նայում եմ։ Վրանի կենտրոնում մի իսկական լիճ է գոյացել։ Հետո ջուրը ծծվեց, բայց այնպիսի ցեխ գոյացավ, որ միայն փորձիր ոտքդ դնել և կխրվես ինչպես ճահճում։ Իսկ մենք այնպես էինք թրջվել, որ նույնիսկ Վանիկի կոշիկների մեջ ջուր էր լցվել։

Նստել ու մտածում ենք. ի՞նչ անել։

— Գտա՛,— հանկարծ գոռում է Վանիկը,— հարկավոր է ավազ շաղ տալ, այնպես կչորանա, որ թեկուզ պառկիր։ Ո՞նց էի մոռացել։

— Պառկել պետք չէ,— ասում եմ,— գոնե կարողանանք քայլել։

Գնացինք ավազ փնտրելու։ Մեր բակում վրանի հետևում մի քիչ ավազ կար։ Մենք բերեցինք դույլը, լիքը լցրեցինք։ Փորձում ենք վերցնել, իսկ դույլը կպել է գետնին։ Ստիպված կեսը թափեցինք և այդպես քարշ տվեցինք վրան։ Հետո նորից լցրեցինք և նորից քարշ տվեցինք։ Այդպես մի քանի անգամ։

— Դու հարթեցրու,— ասում է Վանիկը,— իսկ ես վազեմ դահլիճ ու գամ։ Միայն մի րոպեով։

Հետո եկավ և ասում է.

— Փայտով այնպես խփեց նրա գլխին։ Դու միայն տեսնեիր։

— Ո՞ւմ գլխին,— հարցնում եմ վախեցած։

— Այնտե՜ղ, կինոյում,— ասում է Վանիկը։

— Այդ քո՛ գլխին պետք է խփել,— ասում եմ,— որ շարունակ այս ու այն կողմ չվազես։

Ավազը հարդարեցինք։ Ջուրը չորացավ։ Ավազը այնպես է խշխշում ու լցվում կոշիկներիդ մեջ, որ կարծես ծովափում լինես։ Իսկ մեր շորերը այնպիսի դրության մեջ էին, որ վախենում էինք նայել։

Կինոնկարը վերջացավ։ Բոլորը վերադարձան։ Կանգնել ու ծիծաղում են.

— Այ թե գործ եք արել հա՜...

— Դուք, ի՞նչ է, ցեխի մեջ եք թավալվե՞լ,— գոռում է մեկը։

— Այսպես կեղտոտելը ավելի դժվար է, քան մաքրելը, տեսնես, ո՞նց են կարողացել,— ասում է մյուսը։

— Դա քեզ չի վերաբերում,— ասում եմ,— գնա բանիդ։

— Հիմա կտեսնենք,— ասում է նա,— ընկեր Լևոնը կգա և ձեզ մի լավ կհասցնի։

Ընկեր Լևոնը եկավ։ Նայեց ու ոչինչ չասաց, բայց առանց այդ էլ հասկացանք, որ շատ դժգոհ է։

Պառկել ենք թղթերի մեջ ու ամաչում ենք դուրս գալ։

— Դու էիր մեղավոր,— ասում եմ Վանիկին։— «Հարկավոր է արա՞գ անել», «հարկավոր է արա՞գ անել»։ Ահա թե ինչ ստացվեց։

Իսկ Վանիկն ասում է.

—Ոչի՛նչ։ Ա՛յ, մյուս անգամ այնպե՛ս կհերթապահենք, որ բոլորն էլ իսկապես կզարմանան։ Ճիշտ եմ ասում, կտեսնես։

Մի ամբողջ ամիս ուղղակի պրծում չկար։ Մեկ էլ հիշում էին ու սկսում ծիծաղել։

— Դե լա՛վ,— ասում էինք,— շուտով կտեսնենք։

— Միևնույն է, ձեզնից ոչինչ դուրս չի գա,— ասում էին ու ծիծաղում։

Բայց երբ եկավ մեր հերթը, մենք այնպե՛ս հերթապահեցինք, որ թեև ոչ ոք չզարմացավ, բայց բոլորն էլ շատ գոհ մնացին։ Ընկեր Լևոնն ասաց, որ մենք ամեն ինչ էլ կարող ենք անել, եթե ցանկություն ունենանք, իսկ ցանկություն միշտ էլ պետք է ունենալ։ Միայն երբեք չպետք է շտապել։

Իսկ Վանիկն ասում է.

— Միշտ այդպես է. երբ շտապում ես՝ գործը ուշանում է, իսկ երբ չես շտապում՝ միշտ էլ վերջացնում ես ժամանակին։

# Պայուսակների զրույցը



ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԲԱՅԲՈՒՐԴՅԱՆԻ

Մի հին պայուսակ
Ընկած հատակին,
Իր վիշտն է պատմում
Նոր պայուսակին։
— Մի՛ հրճվիր այդպես,
Քույրիկ բախտավոր,
Ես էլ քեզ նման
Փայլուն էի, նոր։
Բայց չար Վանիկը
Գնդակ էր դարձնում,
Խփում էր ոտքով
Բակում, փողոցում։
Քանի՜ անգամ եմ
Նրա երեսից՝
Մի կերպ դուրս պրծել
Ծանոթ քաղմասից։
Ուտելիք, գիրք էր
Բարձում անքանակ,
Վրաս թափում էր
Մեկ՝ ճաշ, մեկ՝ թանաք։
Այդ փնթի տղան
Հենց հասնում էր տուն,
Վզիցս բռնած
Մի կողմ էր նետում։
«Զորս» գնահատական
Չեմ տեսել երբեք,
Միշտ տուն եմ տարել
«Երկուսներ» ու «մեկ»։—
Նոր պայուսակը
Քույրիկին լսեց,
Նայեց Վանիկին
Ու անչափ հուզվեց։
Ուզեց հեռանալ
Վանիկի մոտից,
Բայց տխրեց տղան,
Ծիկնեց ամոթից։
— Լավ կսովորեմ...
Ես... ես... այս տարի...—
Տեսնենք, խոստումը
Նա կկատարի՞։

# ՄՈՒՏՔԸ սիրալիր խոսքերով

ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Նախանցյալ շաբաթ օրը, ճաշից հետո, ես ու Վանիկը «դարբասապահ-դարբասապահ» էինք խաղում, մեկ էլ՝ հոպ, Մարկոսը...

— Սիմ-Սիմ, դուռը բա՛ց, Սիմ-Սիմ, դուռը բա՛ց,—կանչեց նա։

Մարկոսը միշտ այդպես է, հենց մի գաղտնիք է ունենում պատմելու, իսկույն սկսում է՝ իր «Սիմ-Սիմ, դուռը բաց»-ը։ Ես ու Վանիկը թողեցինք դարբասը, իսկ Մարկոսը դիտմամբ սկսեց ձեռքերի թաթերի վրա կանգնած ման գալ և այնպես երկար ու վարպետորեն...

— Ասելո՞ւ ես, թե՞ չէ,—բարկացա ես,—մենք ժամանակ չունենք քեզ նայելու, գիտե՞ս... մենք դեռ հարյուր քսան գնդակ էլ ունենք դարբասին խփելու, գիտե՞ս...

— Է՛հ, դուք անքաղաքավարիներ, փոխանակ սիրալիր խոսքերով գաղտնիքս բացեք, կոպտություն եք անում։ Ձէ՛, դուք ավելի շուտ ձեր ողնաշարը կտեսնեք, քան «Ռոբինզոն Կրուզոյին»— շուտասելուկի նման վրա տվեց Մարկոսն ու մատները չռեց քթի ծայրին։

— Ես քեզ սիրալիր խոսք ցույց կտամ,—բռունցքս սեղմելով ասացի ես, իսկ Մարկոսը ըսկըսեց պահանջել, որ ամեն մեկս մի սիրալիր խոսք հիշենք...

— Ի՞նչ է, դու աղջի...— Վանիկի խոսքը կիսատ մնաց, որովհետև Մարկոսը ձեռքի ռետինե լարով կտտացրեց նրա քթին...

— Լավ, որ շատ եք խնդրում, ասեմ... Հենց նոր իմ ականջներով լսեցի, որ Գոհարիկն ու Վահանը խոսում էին մեզ համար կինոնկար ցուցադրելու մասին,—ձայնին խորհրդավորություն տալով, ըսկըսեց Մարկոսը։— Գոհարիկը, գիտե՞ք, ինչ էր ասում. ասում էր՝ կոմունիզմի ժամանակ կինոթատրոնի մուտքը փողով չի լինի...

—Իսկ ինչո՞վ,—հարցրեցինք ես ու Վանիկը միասին։

— Գոհարիկն ասում է՝ սիրալիր խոսքերով։

— Իսկ ինքն ի՞նչ գիտի,—կասկածեց Վանիկը։

— Նա ութերորդ դասարանում է սովորում, ջոկատավար է, նա որ չիմանա, բա էլ ո՞վ կիմանա,—ասաց Մարկոսը։ Այդ Մարկոսը մեր դասարանից է՝ 3-ի «պ»-ից, բայց ամեն ինչ գիտի, կարծես սատանա լինի, էնպես է համոզում...

— Դուք,—շարունակում է Մարկոսը,—մեկ-երկու օրից հետո կտեսնեք, որ մեր դասարանի համար Գոհարիկն ու Վահանը, «Ռոբինզոն Կրուզո» կինոնկարը ցույց կտան, ախր, այդ Վահանը առաջին կարգի կինոմեխանիկ է, ու դեռ մուտքն էլ, գիտե՞ք, ինչով կլինի...

— Ինչո՞վ...

— Սիրալիր խոսքերով...

— Ինչպե՞ս,—զարմացանք ես ու Վանիկը միասին։ Ես ու Վանիկը հավատարիմ ընկերներ ենք, ամեն ինչ միասին ենք անում...

— Մեզ, սկզբից, ըստ դասամատյանի համար-



ների, շարք կկանգնեցնենք, հետո Գոհարիկը կասի. «Դե՛հ, երեխաներ, տեսնենք ո՞վ կարող է այնպիսի սիրալիր խոսք ասել, որ մյուսը ասած չլինի։ Ով կասի, նա կմտնի կինոդահլիճ, ով ոչ՝ թող կանգնի վերջում և նորից մտածի...»

— Ի՞նչ գիտես,— անհանգըստացած հարցրեցի ես։

— Դեհ, նրանք՝ Գոհարիկն ու Վահանն էին այդպես խոսում, ես էլ պատահմամբ լսեցի։

— Կարեն, դու կորած ես,— բարձրաձայն ասացի ինքս ինձ։

— Ճիշտ որ, չէ՞ որ դու դասամատյանի 31-երորդն ես,— վշտացավ Վանիկը։

Իսկ Մարկոսը սկսեց ծիծաղել վրաս, թե ես ինչպե՞ս պետք է շվարած կանգնեմ դահլիճի դըռանն ու կմկմացնեմ...

— Իսկի էլ չէ,— բարկացա ես,— այ, կտեսնե՛ք, ես այնպիսի խոսք կգտնեմ, որ ոչ մեկի մտքով էլ անցած չլինի...

— Կարեն ջան, եկ միասին մտածենք, հա՞,— ասաց Վանիկը,— չէ՞ որ ես էլ քսաներորդն եմ...

— Իսկ դաս հարցնելուց ուրախանում էիք, չէ՞,— սկսեց ծաղրել Մարկոսը։



Ու այդ օրվանից, մեկ շաբաթ շարունակ, ես ու Վանիկը հենց միայն սիրալիր խոսքեր էինք մտածում։ Ասենք, մեր դասարանցիները բոլորն էլ սիրալիր խոսքեր հավաքելով էին զբաղված։ Ես նույնիսկ սկսեցի մի հատուկ տետրում գրի առնել։

Քույրս ծիծաղում էր իմ ու Վահանի վրա։ Ասում էր.

— Հետաքրքիր է ձեզ երկուսիդ նայել, երբ դուք «գլուխս մի ցավեցրու», «դմբոգլուխ», «լոշտո» բառերի փոխարեն միմյանց եք դիմում «սիրելիս», «խնդրում եմ», «բարի եղեք» և ուրիշ քաղցր ու հաճելի խոսքերով...

Ճիշտ որ, ես ու Վանիկը չէինք զգացել, որ սկսել էինք միմյանց հետ խոսելիս օգտագործել այն բառերը, որ մտադիր էինք վճարել կինոդահլիճ մուտք գործելու համար։

...Եվ այսպես եկավ այն օրը և այն ժամը ու րոպեն, որ պետք է ասվեր սիրալիր խոսքերի մեր ունեցած ողջ պաշարը... Գոհարիկն ու Վահանը կանգնեցին մեր դպրոցի մեծ դահլիճի մուտքի մոտ։ Մենք դասամատյանի համարների հերթականությամբ շարք կանգնեցինք։ Գոհարիկը որպես ջոկատավար մի՜ փոքր ճառ ասաց սիրալիր խոսելու օգտակարության մասին, հետո չեմ հիշում էլ ինչի մասին, ես լավ չէի լսում, որովհետև հենց մի գլուխ մտքումս կրկնում էի իմ սովորած սիրալիր խոսքերը, որ չմոռանայի...

Առաջինը Մարկոսը ներս մըտավ, նրա ազգանունը Աղաբաբյան է։ Խորամանկը մտածել էր այնպիսի մի բան, որ ոչ մեկիս մտքով էլ չէր անցել... Նա փաթեթի միջից հանեց ծաղիկների մի փոքրիկ փունջ ու տալով Գոհարիկին, դիմեց Վահանին. «Թույլ կտա՞ք...»

Գոհարիկն ու Վահանը նայեցին միմյանց, ժպտացին ու հաճույքով դահլիճ հրավիրեցին Մարկոսին... Հետո Թագուհին ասաց. «Խնդրում եմ, ներս թողնեք»։ Գևորգը թե՝ «Բարեհաճ եղեք, ինձ ներս թողնել»։ Պետրոսը, չլսեցի, թե ինչ ասաց, բայց բոլորը բարձր ծիծաղեցին։ Սահակը, Վարդը, Լորիկն ու Մնացականը չասված ոչ մի սիրալիր խոսք չկարողացան ասել։ Նրանք ստիպված եղան կանգնել ինձանից հետո և նորից մտածել։

Վերջապես հերթն ինձ հասավ։ Ես մի պահ կանգնեցի, ապա, ինչպես կարդացել էի գրքերում, ոտքերս ասպետի նման միմյանց զարկեցի և օդի մեջ ձեռքս թափահարելով իսպանական ռևերանս կատարեցի ու հետն էլ՝

— Սինիորա և Սինիոր, ես նշանավոր Դը Արտանիանն եմ...

— Դեհ դու ի՞նչ Դը Արտանիան ես,— ծիծաղը հազիվ զսպելով ասաց Վահանը,— քո զգեստները, եղբայր...

— Իմ զգեստները ես թանգարանում չթողեցի, չէ՞ որ շատ էին հնացել,— անմիջապես պատասխանեցի ես, ու բոլորը այնպես ծիծաղեցին, որ էլ ինձանից հետո ոչ մեկից էլ սիրալիր խոսք չըհարցրեցին...

Բայց այդ օրվանից սիրալիր խոսքերը մեր ջոկատում շատացան։

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ



# ԱՀԱ ԻՆՉՊԵՍ եղավ...

ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

Վերջին դասի զանգը տալուն պես՝ դասարան մտավ մեր ջոկատավար Վահանը։ Ճիշտն ասած, սիրտս լավ բան չգուշակեց։ Երբ դասերի վերջում ջոկատավարները ներխուժում են դասարան, ուրեմըն անպայման ինչ-որ «միջոցառման» հաշիվ կա։

— Արմեն, աթոռն այս կո՛ղմը տուր,— գոչեց ջոկատավարը։

Նա կանգնել էր դռան տակ ու մի քայլ անգամ այս կողմ անելու մտադրություն չուներ։

Ջոկատի խորհրդի նախագահը բարալիկ ոտքերով աթոռն անմիջապես հասցրեց ջոկատավարին։

Երբ աթոռի ոտքը երկու հոգով ամուր մտցրեցին բռնակի մեջ այնպես, որ դուռը բանալու և փախչելու ոչ մի հնարավորություն չլինի, մեր ջոկատավարը ծանր շունչ քաշեց, մոտեցավ ուսուցչական սեղանին և առանց նախաբանի հայտարարեց.

— Դե, տղանե՛ր ջան... ես...

— Աղջիկները կարող են գնա՞լ։— անկյունից լսվեց Անուշի ձայնը։

Վահանը փորձեց չլսելու տալ, մի փոքր դադար առավ ու նորից.

— Դե, աղջիկնե՛ր, տղանե՛ր... պիոներնե՛ր... Մենք այսօր պետք է հավաքույթ անցկացնենք... Ը՜ը... Ասա՛, Համիկ,— տեսնելով Համիկի բարձրացրած ձեռքը՝ մեծահոգաբար թույլատրեց մեր ջոկատավարը։

— Հավաքույթը երեկոյա՞ն պետք է ունենանք, թե՞ հիմա։

— Հիմա, իհարկե, հիմա,— պատասխանեց ջոկատավարը։

— Շնորհակալություն։

Բոլորը փոթկացրին։ Ես նույնպես բարձրացրի ձեռքս և առանց թույլտվության ասացի.

— Հավաքույթի թեման է «Ժամանակը ոսկի է»։

— Ո՛չ,— ասաց մեր ջոկատավարը։— Այս անգամ նոր թեմա է։ Շատ հետաքրքիր մի թեմա։ Ինչպես մակուլատուրա հավաքել։ Հասկանու՞մ եք, ինչպե՞ս կազմակերպել այդ գործը։

Գլխիս կարծես ընկույզ կոտրեցին։

— Սրամի՜տ,— լսեցի Համիկի ձայնը։

Համոզված էի, որ նա ինձ նկատի ուներ, որովհետև մենք իրար տանել չէինք կարողանում։

— Ընկերնե՛ր... Մակուլատուրա հավաքելը մեր պատվի գործն է... Մենք...

Սկսեց Վահանը միապաղաղ ոգևորությամբ։ Ես փորձեցի գոնե այս անգամ ուշադիր լսել նրա ճառը, բայց չէր ստացվում։ Մտքերս հանգիստ չէին տալիս ինձ։ Ախր, գիտեք, բանը նրանում է, որ...

Նախ՝ մակուլատուրա հավաքելը ճիշտ այնպիսի գործ է, ինչպես երկաթի ջարդվածք հավաքելը։ Եթե չգիտեք, ասեմ, որ մակուլատուրան էլ թղթի ջարդվածքն է։ Հինումին, անպետք թղթերի կտորները հավաքում են հանձնում ընդունման հատուկ կետերին։ Այդ կտորտանքները հետո մշակում, խմոր են դարձնում և այդ խմորից կրկին թուղթ պատրաստում։

Սրանից մոտ մեկ ամիս առաջ, երբ ես առաջին անգամ իմացա այդ մասին, մի քանի տղաներով որոշեցինք մակուլատուրա հավաքել։ Տասն օրվա մեջ այնքան շատ անպետք թուղթ հավաքեցինք, որ շնորհակալագիր ստացանք այդ «հրաշալի նախաձեռնության» կապակցությամբ։ Ճիշտ որ ասեմ, մակուլատուրա հավաքելը ո՛չ ինձ, ո՛չ էլ տղաների համար բնավ էլ «պատվի ու փառքի» գործ չէր։ Որոշեցինք, որ այդպիսի բան դեռ ոչ մեկի մտքի ծայրով էլ չի անցել, ու սկսեցինք հավաքել։ Ի՜նչ մեծ բան էր որ...

Ես շնորհակալագիրս ցույց տվեցի Համիկին։ Բայց նա միայն ծաղրեց ինձ ու «աղբ հավաքող»

կանչելով, փախավ: Խնդրեմ, այս էլ քեզ փառք ու պատիվ...

— Ովքե՞ր են ուզում արտահայտվել,— գործարար տոնով հարցրեց մեր ջոկատավարը:

Արտահայտվելու ցանկություն ունեցողներ չկային:

— Դե, տղաներ, գուցե առաջարկություննե՞ր ունեք...

— Եթե աղջիկներն ունենան՝ չասե՞ն,— նորից լսվեց Անուշի ձայնը:

Վահանը այս անգամ կարմրատակեց և դառնալով ինձ, ժպտաց.

— Գուցե առաջին նախաձեռնո՞ղը մի երկու խոսք կասի մակուլատուրան ավելի կազմակերպված, միացյալ ուժերով հավաքելու մասին:

Ես ոտքի ելա: Եվ քանի որ կոկորդս անմիջապես չորացավ, հազացի:

— Ամենից առաջ անհրաժեշտ է մի լավ տոպրակ, որպեսզի ավելի կազմակերպված...— սկսեցի ես:

— Սնդուկ չի՞ լինի, — գոչեց ինչ-որ մեկը:

— Իսկ խուրջի՞ն...

— Խուրջինն ավելի հարմար է: Մի աչքը լցվեց, շուռ տուր՝ մյուսը լցրու:

— Տոպրակը սև՞ է լինելու, թե՞ սպիտակ:

Մեր ջոկատավարը, որքան ուժ ուներ, բռունցքով խփում էր սեղանին: Վերջապես խաղաղվեցին:

— Շարունակի՛ր, շարունակի՛ր,— ինձ դարձավ ջոկատավարը:—Տղաներ ջան, հանգիստ մնացեք...

— Իսկ աղջիկները խանգարե՞ն,— ծղրտաց Անուշը:

—Հետո,—շարունակեցի ես,— պետք է հետախուզել, թե ընդհանրապես որտեղ են ամենից շատ լինում անպետք թղթերը:

— Հետախուզության գիշերո՞վ պետք է գնալ, թե՞ ցերեկով,— հարցրեց մեկը:

— Գիշերով ավելի հետաքրքիր է.— ասաց մի ուրիշը:

— Աղջիկները մթից վախենում են, չի՛ լինի,— գոչեցին մի քանիսը:

— Շարունակի՛ր, շարունակի՛ր,— ասաց ջոկատավարը, երբ մի քիչ լռեցին:

— Էլ ասելու բան չունեմ,— վիրավորված հայտարարեցի ես ու նստեցի:

— Լա՛վ, հիմա, տղան... պիոներներ, հարցեր չունե՞ք, — ասաց ջոկատավարը:— Ասա, Համմի՛կ:

— Մեր հաջորդ հավաքույթի թեման ո՞րն է,— հարցրեց Համմիկը:

— Այդ մասին հետո,— զարմանալի բան էր, թե ինչպես էր դիմանում մեր ջոկատավարը:— Եթե մակուլատուրայի մասին հարցեր ունեք՝ տվեք...

— Շնորհակալություն,— ասաց Համմիկը:

— Ես մի հարց ունեմ,— հանկարծ տեղից վեր թռավ Հայկը: Նա այդպես էր: Երևի հավաքույթի ամբողջ ընթացքում նստած մտածում էր, թե գոնե մի հարց տնի:—Իսկ տներից կարելի՞ է մակուլատուրա հավաքել:

— Կարելի է,— ասաց մեր ջոկատավարը:

— Հայրիկս շատ գրքեր ունի: Ինչքան հին, քրքրված գրքեր կան՝ կբերեմ,— խոստացավ Հայկը և, իր գործն ավարտած համարելով, նստեց:

— Այդպիսի գրքերը պետք է կազմել,— նկատեց մեր ջոկատավարը:— Մաշված գիրքը դեռ մակուլատուրա չէ:

— Մենք օրական հինգ հատ լրագիր ենք ստանում,— հետևի նստարաններից գոչեց մեկը,— ամեն օր կբերեմ:

— Դա ի՞նչ է որ...



Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Դրան մոտ պահակություն անող Արմենը հանկարծ մի քանի քայլ առաջ եկավ ու ասաց.

— Մեծ եղբայրս ամսագրեր է ստանում: Հավաքում է: Եթե մի քանիսը խնդրեմ՝ չի մերժի:

— Եթե հավաքում է՝ կմերժի,— գոչեցի ես, վախենալով, թե այդ առաջարկությունը կանցնի: Ախր ես «Պիոների» համարները հավաքում եմ, կազմում ու պահում: Հետաքրքիր է, երբ մեկ-մեկ վերցնում ու նորից թերթում ես և այն խնդիրը, որն անցյալ անգամ չես կարողացել լուծել, հանկարծ գլխի ես ընկնում, թե ինչպես պետք է լուծել, շատ ես ուրախանում, որ արդեն կարգին մեծացել ես:

Մեկ էլ դասարանում տետրակի թղթից պատրաստած մի ծիտ ճախրեց ու նստեց գրատախտակի մոխրագույն շրջանակին:

— Չի՛ կարելի, Սմբատ,— նկատողություն արեց մեր ջոկատավարը:

— Ես պոլիտեխնիկ դաս եմ պատրաստում,— անվրդով արդարացավ Սմբատը, հետո ոտքի ելավ ու անմեղ ձայնով ասաց.— Մի առաջարկ ունեմ: եկեք նախանաշի փողերը խնայենք ու դրանով հին թերթեր գնենք: Կրպակներում հին թերթեր շատ են վաճառում:

— Կարելի՞ է,— նորից ձեռքը բարձրացրեց Համիկը:

— Ասա, Համիկ:

— Անպետք թուղթ երևի չկա: Եկեք հրաժարվենք այդ մտքից:

— Մենք չենք հրաժարվի,— տաքացած գոչեց մեր ջոկատավարը:— Մենք պետք է դա համարենք մեր...

Դուռը թափով քաշեցին: Արթուրի ոտքը բռնակից դուրս պրծավ: Ներս թափվեցին առաջին դասարանցիները, որոնք պարապում էին երկրորդ հերթին:

Տեսնելով պստիկներին, մեր ջոկատավարը շփոթվեց և շտապ-շտապ ասաց.

— Դե, ջոկատի հավաքույթը համարենք ավարտված: Մեր այս հավաքույթի թեման էր. «Ինչպես մակուլատուրա հավաքել»: Երբ հանկարծ մեկը հարցնի, կկարողանա՞ք պատասխանել:

— Այո՛, այո՛,— գոչեցինք մենք ու, պայուսակները վերցնելով, դուրս նետվեցինք:

...Արդեն փողոցում, երբ պայուսակը ճոճելով շտապում էի տուն, հանկարծ մտածեցի, թե, ախր, ինչպե՞ս եղավ, որ առանց հավաքույթ անելու, տղաներով վճռեցինք մակուլատուրա հավաքել և նույնիսկ շնորհակալագրեր էլ ստացանք: Բայց հենց որ մեր ջոկատավարը որոշեց ամեն բան անել կազմակերպված, որպես պատվի ու փառքի գործ...

Հենց այդտեղ էլ հիշեցի հորեղբորս խոսքերը. «Շատ որ մտածես՝ շուտ կպառավես»: Եվ քանի որ բնավ էլ միտք չունեմ շուտ պառավելու, որոշեցի այդ մասին այլևս չմտածել:

# Վաղը եղբայրս դպրոց կգնա

ԺԱՆՆ ԴՐՄԶԻ

Ուրախ աղմուկ է մեր տանը հիմա.
Վաղը եղբայրս դպրոց կգնա:
Ես նախանձում եմ բախտին իմ եղբոր,
— Եղբայր ջան, ցույց տուր գրքերդ բոլոր...
— Տուր, նոր գլխարկդ իմ գլխին չափեմ...
— Հագնեմ բլուզդ ու գոտիդ կապեմ:—
Պատասխանում է եղբայրս խսկույն.
— Դու կփչացնես գրքերս սիրուն.
Իմ բլուզն հագիդ երկար կլինի,
Գլխարկս էլ մեծ է, աչքերիդ կընկնի...

Խաղաղվեց տունը. արթուն մարդ չկա...
Վաղը եղբայրս դպրոց կգնա.
Նա իր անկողնում քնած է մուշ-մուշ...
Վեր կացա, գրքերն հանեցի զգույշ.
Հանեցի հետո բլուզ ու գլխարկ
Եվ սկսեցի հագնվել արագ...
Բայց իմ եղբայրը շատ ճիշտ էր ասում.
Բլուզը մինչև ծնկներս է հասնում:

Գլխարկի մասին նույնպես ճիշտ ասաց...
Չէ՛, այդ երկուսն էլ մեծ են չափազանց:

Իսկ գրքերում կան նկարներ պես-պես.
Մեկում՝ տղաներ ծիր ու ծաղկեպես,
Մյուսում՝ մի քարտեզ մեծ ու գունավոր,
Երրորդ գրքում էլ՝ նստարան մի նոր,
Չորրորդում՝ ինչ-որ անորոշ պատկեր,
Ամպե՞ր են արդյոք, թե՞ ձերմակ սագեր:
Դրանց տակին էլ ինչ-որ մեծ մի տառ:
Ափսո՜ս, որ դեռ չեմ սովորել կարդալ:

Շատ խորն է քնել եղբայրս այսօր...
Տեղը դրեցի գրքերը բոլոր,
Բլուզն աթոռի գլխին փռեցի,
Գլխարկն էլ նորից եր կախ տվեցի
Եվ, «ախ» քաշելով մի քանի անգամ,
Պառկեցի՝ քնեմ, որ շուտ մեծանամ:

Թարգմ. Գ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

# ՈՐՆ Է ՄԵՐ ՓՈՂՈՑԸ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Տանը ոչ ոք չկար։ Երբ ժամացույցի փոքր սլաքը կլինի հինգի, իսկ մեծը տասնմեկի կամ տասներկուսի վրա, հայրիկն ու մայրիկը տուն կգան, կճաշեն ու բոլորը միասին կգնան Սուրիկենց։ Այսօր նրա ծննդյան օրն է։

Արմինեն սպասում է ու սպասում, բայց իզուր։ Ժամացույցը չխչխկում է, աղմկում, բայց սլաքներից ոչ մեկը տեղից չի շարժվում։

Սլաքներին չպետք է նայել, որ նայում ես, նրանք չեն կարողանում շարժվել։ Ա՛յ, փործի համար... Արմինեն շրջվում է, մի քիչ սպասում ու նորից դառնում դեպի ժամացույցը։ Եվ ի՜նչ՝ մեծ սլաքն ահագին առաջ է գնացել։ Արմինեն դա շատ լավ գիտե, բայց... համբերություն չունի։

Նա դուրս է գալիս պատշգամբ։

Դիմացի՝ Արայիկենց տան կտուրի ծայրին, ուր դեռ արև կա, պառկել է իրենց կատուն։

— Փիսո՛, փիսո՛,— կանչում է Արմինեն։

Կատուն բարձրացնում է գլուխը և նայում, բայց կարծես չի ճանաչում Արմինեին։ Մինչև հայրիկն ու մայրիկը տուն չգան, մինչև փիսոն պնակի ու պատառաքաղի ձայն չլսի, տեղից չի շարժվի։

Հայրիկն ասում է, որ Արայիկենց տունը շուտով պիտի քանդեն և նրանց նոր տուն պիտի տան։ Գուցե հիմա քանդեին... Փիսոն էլ տեղ չի ունենա և ստիպված կգա տուն։

Արմինեն նորից գալիս է ժամացույցի մոտ։ Չէ՛, պետք է մի բան մտածել, թե չէ այդ ժամացույցը... չգիտես ում ժամացույցը... Լավ ժամացույց չէ։ Մայրիկի ժամացույցը լավն է։ Հայրիկինն ավելի լավն է. մի փոքր սլաք էլ ունի, որն այնպես արագ է պտտվում...

Արմինեն մտածում է բոլոր լավ ժամացույցների մասին։ Ամեն անգամ, հայրիկի հետ զբոսանքից տուն վերադառնալիս, այգու մոտ, մեծ սյան վրա, Արմինեն տեսնում է մի մեծ ժամացույց... Թռչող սլաքներով ժամացույց։ Ա՛յ, եթե նրան նայես, հայրիկն ու մայրիկը շուտ կգան։

Արմինեն մի քիչ էլ մտածեց, տեսավ բոլորովին էլ չի վախենում, դուրս եկավ տնից ու սկսեց վազել փողոցով վեր, դեպի այգի։ Ահա և խաչմերուկը, նա հեռվից տեսավ ժամացույցը. ա՛յ քեզ բան, առաջ, առանց հայրիկի կամ մայրիկի նա չէր անցնի խաչմերուկը, բայց այսօր... չգիտես ինչպես, նա արագ անցավ և կանգնեց ժամացույցի տակ։

Հենց Արմինեն տեղ հասավ, մեծ սլաքը իսկույն թռավ տասի վրա։

Ի՜նչ լավ ժամացույց է։

Արմինեն ժպտում էր։

Նա չհասցրեց հաշվել, թե սլաքը քանի անգամ թռավ, մեկ էլ տեսավ, որ արդեն տասնմեկի վրա է։

«Հիմա կգան»,— ուրախացավ Արմինեն ու շուռ եկավ, որ տուն վազի, բայց շփոթված նայեց շուրջը։ Խաչմերուկը չորս փողոց ուներ և բոլորն էլ իրար նման։

«Ո՞րն է մեր փողոցը»,— վախեցած մտածեց Արմինեն։

Փողոցները խառնվել էին։ Աղմկում էին տրոլեյբուսներն ու մեքենաները, մարդիկ, որ առաջ շատ հանգիստ զբոսնում էին, ինչ-որ տեղ էին շտապում։ Երևի տուն են գնում։ Իհարկե, տուն։ Շուտով փողոցներում ոչ ոք չի մնա։ Բոլորը կգնան, ու ինքը կմնա մենակ։

Ինչքա՜ն էլ անծանոթ մարդիկ կան։ Հարկավոր է լավ նայել, կարող է, ծանոթներ էլ կան, բայց ինքը չի տեսնում։

Ահա՛ մի քեռի է գալիս՝ հացը ծեռքին։ Արմինեն նայում է քեռուն, բայց չի ճանաչում։ Մի մորաքույր կարծես․ նրան է նայում, երևի, ճանաչում է։ Արմինեն առաջ է գնում, որ մորաքույրը իրեն լավ տեսնի, բայց... մորաքույրը ո՛չ ժպտում է, ո՛չ էլ խոսում։

Երկու աղջիկ հանդիպեցին փողոցում և, չգիտես ինչու, շատ ուրախ են։ Երևի, կորել էին ու հիմա գտան իրար։ Իսկ Արմինեին ո՞վ պիտի գտնի, շուտով մութը կընկնի, ու եթե ծանոթ էլ գա, նրան չի տեսնի, և Արմինեն կկորչի։ Իսկ երբ կորչի, որտե՞ղ կլինի։

Արմինեն նայում է ժամացույցին։ Մեծ սլաքը մեկի վրա է։ Ի՜նչ էլ արագ է վա-

զում այդ սլաքը։ Նա չի ուզում, որ սլաքները թռչեն։ Նա իրենց ժամացույցն է ուզում, իրենց տունը, մայրիկին...

Եվ Արմինեն սկսեց լաց լինել։

— Ինչո՞ւ ես լաց լինում,—նրան մոտեցավ պայուսակը ձեռքին, կարմիր փողկապով մի տղա։— Մայրիկիդ կորցրե՞լ ես։

— Ո՛չ, ես եմ կորել։

— Դու չես կորել, դու այստեղ կանգնած ես,— ասաց տղան։—Ձեր տունը ո՞ր կողմն է։

— Չգիտեմ։

— Ինչպե՞ս ես եկել այստեղ։

— Վազելով։ Եկա, որ ժամացույցին նայեմ։

Արմինեն նորից նայեց ժամացույցին և... սկսեց բարձրաձայն լաց լինել։ Մեծ սլաքը արդեն երեքի վրա էր։

— Ո՞ր փողոցով եկար,—նորից հարցրեց տղան։

— Այս փողոցներով։

— Շատ լավ։ Մենք հենց այս փողոցներով էլ կգնանք, մինչև ձեր տունը գտնենք։

Արմինեն զարմացած նայեց տղային։

— Իսկ դու ինձ ճանաչեցի՞ր։

— Իհա՛րկե... Հայրիկդ ու մայրիկդ հիմա քեզ են փնտրում ու կարծում են, թե դու կորել ես։

— Ճիշտ է,—ասաց Արմինեն,—շուտ գնանք։

— Դե, անցնենք փողոցը։ Տե՛ս, կարմիր լույս է... Գիտե՞ս կարմիր լույսն ինչ է։

— Ի՞նչ։

— Այսինքն՝ չի կարելի անցնել, պիտի սպասել։ Իսկ հիմա, տե՛ս, կանա՜չ լույս է... այսինքն՝ կարելի է անցնել։

Նրանք անցան խաչմերուկը։

— Հետո, գիտե՞ս, երբ անցնում ես փողոցը, նախ պիտի նայես ձախ, իսկ հետո, երբ հասնում ես փողոցի մեջտեղը, պետք է նայես աջ։

—Չէ՛, սա մեր փողոցը չէ,—լացակումած ասաց Արմինեն։

— Ոչինչ, մենք էլ կգնանք մյուս փողոցը,— ասաց տղան։

Արմինեն նայեց տղային։

— Մեր փողոցում հացի խանութ կա։

— Է՞լ ինչ կա։

— Դպրոց... Մեր փողոցում դպրոց էլ կա։

— Դպրո՜ց,—ուրախացավ տղան,—դա մեր դըպրոցն է։ Թե չէ հացի խանութ ամեն փողոցում էլ կա։ Գնանք։

Տղան բռնեց Արմինեի ձեռքից, և նրանք ուրախ քայլեցին առաջ։

— Գիտե՞ս,—ասաց Արմինեն,—եկող տարի ես պետք է սովորեմ մեր դպրոցում։

— Իհարկե,—ասաց տղան։

— Վազենք, լա՞վ,—ասաց Արմինեն։

— Վազենք,—ասաց տղան։

— Ա՛յ, նա է մեր տունը։ Տե՛ս, տե՛ս։

— Տեսա,—ասաց տղան։—Դե, տուն վազիր։ Մյուս անգամ մենակ փողոց դուրս չգաս։ Ցտեսություն։

Տղան ժպտաց ու գնաց։

«Եկող տարի, որ դպրոց գնամ, ես նրան կըճանաչեմ»—մտածեց Արմինեն և ուրախ-ուրախ աստիճաններով վազեց վերև։

Աստիճաններով արագ-արագ իջնում էր մայրիկը։




Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԻՆԱՍՅԱՆԻ



# ՊԱՏՄԻՉՆԵՐԻՆ

Ձեր դեմքն եմ տեսնում դարերի մթնում,
Ձեր դեմքը՝ դժգույն, դալուկ, մարմարյա,
Մեր մագաղաթյա գրքերից բազում
Ձեր շունչն եմ զգում, կյանքն ամենօրյա։
Դուք աստղեր դարձաք դարերի մթնում,
Փարոսներ դարձաք մեր ճանապարհին,
Եվ ձեր իղձերը սուրբ ու լուսալիք
Հոսեցին ինչպես պատմության գետեր
Եվ սերունդների համար մեր գալիք
Մութի մեջ դարձան լույս արահետներ։

*ԱՆԱՆՅԱՆ ԼՅՈՎԱ*

*(Նոյեմբերյանի շրջան,*
*Կողբի միջնակարգ դպրոցի աշակերտ)*

# Նազանի երազը



*ՍՄԲԱՏ ԱՍԼԱՆՅԱՆ*

Կույր է փոքրիկ Նազանին,
Հազիվ տասը տարեկան.
Միշտ արև է երազում
Ու ծաղիկներ հուրհրան։

Նրա հայրը սպանվեց
Դաժան կռվում, կերչի տակ.
Ջահել մայրը վախճանվեց
Պատերազմի ժամանակ։

Ամբողջ գյուղն էր մեղք գալիս,
Ոսկեծամիկ աղջկան,
Տատը հուզվում էր, լալիս,
Մխիթարում միշտ նրան։

Նա չգիտեր ինչ աներ,
Չէր հավատում բժշկին,

Սրբերին էր աղոթում
Ու տուն կանչում հեքիմին։

Բայց դեղերը հեքիմի
Չբուժեցին աղջկան,
Նրա աչքերն ավելի
Խավարեցին, փոս ընկան։

Եվ մի օր էլ աղջիկը
Փարվեց տատին ու ասաց.
— Տատիկ, տար ինձ բժշկի,
Նա կբուժի անկասկած։

Ու տատիկը ճարահատ՝
Ճամփի պաշար պատրաստեց

Եվ սիրասուն թոռնիկին
Հիվանդանոց ուղարկեց։

* * *

Անցան օրեր, ու մի օր
Կարմիր խաչով մեքենան
Կանգնեց ուրախ փնչալով
Հենց դռան մոտ իրենց տան։

Եվ դուրս թռավ Նազանին
Թիթեռնիկի պես թեթև,
Վազեց, փարվեց տատիկին՝
Աչքերում խինդ ու արև։

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*



# ԴԵՊՔ ՍԱՀՄԱՆԻ ՄՈՏ

ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Վազգենը երկու օր էր, ինչ դասի չէր գալիս, ու Կարենը ուրախացել էր... Չէ՛, չէ՛, ի՞նչ եմ ասում, չէր ուրախացել, այլ պարզապես... Բայց սպասեցեք, ամեն ինչ հերթով ասեմ, որ հանկարծ, թե չէ, կկարծեք, որ նա ուրախացել էր ընկերոջ հիվանդության համար:

Արդեն մոտ մեկ ամիս էր, ինչ ընկերների ներկայությամբ Վազգենը խոսք էր տվել այնպես օգնել իր մտերիմ ընկերոջը՝ Կարենին, որ նա այլևս ետ չմնա:

Ախր, էլ ի՞նչ ընկերներ, երբ մեկը միայն «չորսերով» ու «հինգերով» է սովորում, իսկ մյուսը՝ շարունակ «երեքներ» ու «երկուսներ» ստանում: Առաջ, դասերից հետո նրանք հանդիպում էին միայն խաղերի համար, իսկ հիմա միասին դասեր են պատրաստում:

Ի՞նչ խոսք, նրանք կարգին ընկերներ են ու ոչ մեկի մտքով չի անցնում մյուսի առաջ ինչ-որ բանով պարծենալ, բայց ինչ որ ճիշտ է՝ ճիշտ է. դպրոցական հարցերում Կարենը միշտ ընկերոջը լսում է, նրան գերադասություն տալիս: Ասում եք, դա լավ չէ՞: Իսկ իմ կարծիքով տեղն է: Թող տարվա սկզբից չծուլանար ու այդքան ետ չմնար:

Ու հիմա երկու օր էր, ինչ Վազգենը դասի չէր գալիս, իսկ Կարենն էլ ուրախ էր: Չէ՛, էլի չհասկացաք: Ուրախ էր ո՛չ թե նրա համար, որ ընկերը հիվանդ է, այլ, որովհետև այս երկու օրում ինքն է սկսել Վազգենի հետ պարապել:

Կարենը իրեն մի տեսակ պատասխանատու է զգում: Հանաք բան չէ: Պետք է բոլոր առարկաներից նոր դասերը բացատրի ընկերոջը, այն էլ Վազգենին, որը միշտ իր հետ պարապել է:

— Չէ, չեղա՜վ,—դեմքին սովորական լուրջ արտահայտություն տալով՝ ասում է նա,—բոլորովին չեղավ: Դու խնդիրը նորից լուծում ես հին ձևով: Ախր, հիմա մենք այսպես ենք լուծում. դե, ուշադիր հետևիր...

Նա իրեն շատ լուրջ է պահում, մեծավարի ու մի տեսակ, ամոթ չլինի ասել, բավականություն է զգում: Կարծես ուզում է ասել. «Մենք էլ կարող ենք, է՛լի, քեզ մի բան սովորեցնել, այնպես որ...»

Ո՞վ գիտի, քանիերորդ անգամ մտքում որոշում էր այնպես անել, որ երբ Վազգենը լավանա, այլևս ոչ մի դասի համար ընկերոջ կարիքը չզգա:

Հիմա իմացա՞ք, թե ինչու է նա մի տեսակ ուրախ ու գոհ:

Վազգենի մոտից դուրս գալիս նա դեռ երկար ժամանակ շարունակում է այդպես շատ լուրջ ու հանդիսավոր զգալ իրեն: Մինչև անգամ Մոխրիկը նրան կասկածանքով է նայում: Նայում է տիրոջ աչքերին և նրան թվում է, թե տիրոջ հետ ինչ-որ տխուր բան է կատարվել: Ինքն էլ է խեղճանում, կուչ գալիս, պոչը ոտքերի արանքը հավաքում, մեղավորի նման գլուխը կախ գցում: Ու քայլում է ոչ թե ծուլ-ծուլ լինելով, տիրոջ առջևից, այլ հազիվ-հազ քաշ է գալիս նրա հետևից:

Մոխրիկը շատ հասկացող շուն է, միայն թե չի կարող Կարենին հարց ու փորձ անել, մանրամասն իմանալ, թե ինչու՞ է նա ամեն անգամ Վազգենի




ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Վազգենը երկու օր էր, ինչ դասի չէր գալիս, ու Կարենը ուրախացել էր... Չէ՛, չէ՛, ի՞նչ եմ ասում, չէր ուրախացել, այլ պարզապես... Բայց սպասեցեք, ամեն ինչ հերթով ասեմ, որ հասկանաք, թե չէ կկարծեք, որ նա ուրախացել էր ընկերոջ հիվանդության համար։

Արդեն մոտ մեկ ամիս էր, ինչ ընկերների ներկայությամբ Վազգենը խոսք էր տվել այնպես օգնել իր մտերիմ ընկերոջը՝ Կարենին, որ նա այլևս ետ չմնա։

Ախր, էլ ի՞նչ ընկերներ, երբ մեկը միայն «չորսերով» ու «հինգերով» է սովորում, իսկ մյուսը՝ շարունակ «երեքներ» ու «երկուսներ» ստանում։ Առաջ, դասերից հետո նրանք հանդիպում էին միայն խաղերի համար, իսկ հիմա միասին դասեր են պատրաստում։

Ի՞նչ խոսք, նրանք կարգին ընկերներ են ու ոչ մեկի մտքով չի անցնում մյուսի առաջ ինչ-որ բանով պարծենալ, բայց ինչ որ ճիշտ է՝ ճիշտ է. դպրոցական հարցերում Կարենը միշտ ընկերոջը լսում է, նրան գերադասություն տալիս։ Ասում եք. դա լավ չէ՞։ Իսկ իմ կարծիքով տեղին է։ Թող տարվա սկզբից չծուլանար ու այդքան ետ չմնար։

Ու հիմա երկու օր էր, ինչ Վազգենը դասի չէր գալիս, իսկ Կարենն էլ ուրախ էր։ Չէ՛, էլի չհասկացաք։ Ուրախ էր ո՛չ թե նրա համար, որ ընկերը հիվանդ է, այլ, որովհետև այս երկու օրում ինքն է սկսել Վազգենի հետ պարապել։

Կարենը իրեն մի տեսակ պատասխանատու է զգում։ Հանաք բան չէ։ Պետք է բոլոր առարկաներից նոր դասերը բացատրի ընկերոջը, այն էլ Վազգենին, որը միշտ իր հետ պարապել է։

— Չէ, չեղա՞վ,—դեմքին սովորական լուրջ արտահայտություն տալով՝ ասում է նա,—բոլորովին չեղավ։ Դու խնդիրը նորից լուծում ես հին ձևով։ Ախր, հիմա մենք այսպես ենք լուծում. դե, ուշադիր հետևիր...

Նա իրեն շատ լուրջ է պահում, մեծավարի ու մի տեսակ, ամոթ չլինի ասել, բավականություն է զգում։ Կարծես ուզում է ասել. «Մենք էլ կարող ենք, է՛լի, ձեզ մի բան սովորեցնել, այնպես որ...»

Ո՞վ գիտի, քանիերորդ անգամ մտքում որոշում էր այնպես անել, որ երբ Վազգենը լավանա, այլևս ոչ մի դասի համար ընկերոջ կարիքը չզգա։

Հիմա իմացա՞ք, թե ինչու է նա մի տեսակ ուրախ ու գոհ։

Վազգենի մոտից դուրս գալիս նա դեռ երկար ժամանակ շարունակում է այդպես շատ լուրջ ու հանդիսավոր զգալ իրեն։ Մինչև անգամ Մոխրիկը նրան կասկածանքով է նայում։ Նայում է տիրոջ աչքերին և նրան թվում է, թե տիրոջ հետ ինչ-որ տխուր բան է կատարվել։ Ինքն էլ է խեղճանում, կուչ գալիս, պոչը ոտքերի արանքը հավաքում, մեղավորի նման գլուխը կախ գցում։ Ու քայլում է ոչ թե ծուլ-ծուլ լինելով, տիրոջ առջևից, այլ հազիվ-հազ քարշ է գալիս նրա հետևից։

Մոխրիկը շատ հասկացող շուն է, միայն թե չի կարող Կարենին հարց ու փորձ անել, մանրամասն իմանալ, թե ինչու՞ է նա ամեն անգամ Վազգենի

տած լրտես է: Եթե, իհարկե, Կարենի կասկածները ճիշտ են:

Այդպես մտածելով, Կարենը Մոխրիկի հետ միասին գետնին պառկելով, սողալով հետևում է մարդուն, մեկ էլ հանկարծ մի միտք ծագեց գլխում:

— Սպասիր, Մոխրիկ: Տեղիցդ չշարժվես,— կարգադրեց նա:

Ապա հանեց պայուսակից մի տետր, բաց արեց, ազատ էջի վրա շտապ գրոտեց, թերթը կտրեց, քառակուսի ծալծլեց ու դիմեց Մոխրիկին.

— Մոխրիկ, գիտե՞ս ինչ, դու շտապ վազիր Վազգենենց տուն: Հասկանու՞մ ես, Վազգենենց:

Մոխրիկը ուշադիր նայում էր մեկ Կարենի աչքերին, մեկ էլ նրա ձեռքին բռնած թղթին:

— Սա կտանես Վազգենին, հասկանու՞մ ես, Վազգենին: Վազգենին: Մոխրիկ, չհաչես, վազիր թաքուն... Տար Վազգենին:

Այս խոսքերը տալուց հետո Կարենը շանը տվեց երկտողը:

Շունը մի պահ տատանվեց, բայց երբ Կարենը նորից կարգադրեց.

— Շու՛տ, Վազգենին...— մի վերջին անգամ տիրոջը նայելուց հետո Մոխրիկը շրջվեց և արագ հեռացավ:

Իսկ Կարենը շարունակեց հետևել անծանոթին: Շրջակայքի թփերը այս մասում հետզհետե ցածրանում էին, և պայուսակը խանգարում էր գետնին պառկելով առաջ շարժվել: Նա, ի վերջո, պայուսակը մի պատահական տեղ թողեց. հետո ման կգա կգտնի: Քիչ հետո հասան թփապատ ձորի լանջը: Կարենը արդեն սողում էր: Նրա հագուստները փոշոտվել ու մի քանի տեղից էլ պատռվել էին, ձեռքերի ափերը, մատները, ծնկները քերծվածքներով էին պատվել:

Հանկարծ նրա ոտքի տակից մի բռնցքաչափ քար գլորվեց:

Նա տեղում քար կտրեց: Ձորի լանջի ներքևում անծանոթն էր, ինքը վերում, քարը հանդիպելով չոր խոտերի ու ցածրիկ թփերի՝ դանդաղ էր գլորվում: Կարենը սրտի խփոցով հետևում էր: Ամեն անգամ, երբ քարը հանդիպում էր որևէ խոչընդոտի, Կարենը ամբողջ հոգով ցանկանում էր, որ նա կանգ առնի, բայց քարը շարունակում էր գլորվել: Դեռ լավ էր, որ կամաց էր գլորվում, լավ էր, որ խոչընդոտներ պատահում էին, թե չէ ձայնը կգրավեր անծանոթի ուշադրությունը, և այն ժամանակ...

Այն ժամանակ Կարենը չէր էլ պատկերացնում, թե ինչ կարող էր պատահել: Անծանոթը կարող էր փախչել, վերջապես կարող էր ետ նայել ու տեսնելով, որ իրեն հետևողը մի փոքրիկ, անզեն երեխա է, հարձակվել Կարենի վրա... Այդպիսի խոշոր ու հաղթանդամ մարդու համար ի՞նչ մի մեծ դժվարություն էր մի երեխայի խեղդելը...

Սարսափից Կարենի արյունը սառեց. ճակատը սառը քրտինքի կաթիլներով պատվեց, բայց նա շարունակում էր առաջ սողալ՝ աչքից բաց չթողնելով անծանոթին: Վերջապես քարը մի փոսի մեջ կանգ առավ. Կարենը թեթևացած շունչ քաշեց:

Իսկ եթե Վազգենը ուշանա՞ սահմանապահներին հայտնելը. եթե մարդը հասնի՞ գնացքին: Ի՞նչ անել: Իրար հետևից Կարենի գլխով հազար ու մի միտք էր անցնում: Ինքն էլ կբարձրանա գնացք: Բանն այն է, որ այստեղ կանգառ չկա, պարզապես գնացքը շատ դանդաղեցնում է ընթացքը: Կարենենց գյուղացիներից նրանք, ովքեր քաղաք են գնում քիչ բեռով և շտապում են, կայարան չեն հասնում, այլ հենց ընթացքի ժամանակ, այստեղ էլ նստում են:

Ինքն էլ կթռչի: Չնայած երկաթգծերը շատ բարձր են, և Կարենի հասակն ունեցողի համար վտանգավոր է, բայց նա կթռչի, նա կկառչի վագոնի աստիճանների բռնակից. քաշ կգա գնացքի



ընթացքում, մինչև որ մեկն ու մեկը օգնի, բարձրացնի և այն ժամանակ…

Ահա, անծանոթը դուրս է գալիս ձորից։

Հիմա նա իրեն չի տեսնի։ Կարենը բարձրացավ տեղից ու ձորի հանդիպակաց լանջն ի վեր վազեց, մինչև որ հասավ ձորի պռնկին։ Հազիվ թե մի երկու քայլ էր անծանոթին բաց թողել աչքից, բայց նրան թվում էր, թե անծանոթը անհետացած կլինի։ Հուզմունքից, մացառներից ու անհանգստությունից քիչ էր մնում սիրտը պայթեր։

Ոչ, ահա նա։ Միայն թե առաջ չի գնում, այլ մի խոշոր քարի ստվերում նստել է։ Այդպես էլ կա, սպասում է գնացքին։ Ահա։ Անծանոթը նայեց ժամացույցին։ Սրիկա՛։ Մինչև անգամ գիտե, թե սովետական գնացքը ժամը քանիսի՞ն է հասնելու այստեղ։

Այդպես լարված նայելիս, մեկ էլ հանկարծ Կարենը արագ ու զգույշ քայլերի ձայն լսեց հետևում։ Անսպասելիությունից քիչ մնաց գոռար։ Մեկը ձեռքը դիպցրեց նրա ուսին։ Ակնթարթի



ընթացքում Կարենը մտածեց, որ այդ էլ մի ուրիշ սահման խախտող է, ուզեց ճչալ, բայց սովետական սահմանապահի ծանոթ համազգեստը տեսնելով, ճանաչեց ծանոթ սերժանտին՝ Սարիբեկյանին՝ Քիչ մնաց ուրախությունից փաթաթվեր նրան։ Միաժամանակ Կարենը տեսավ, թե ինչպես երկու ուրիշ սահմանապահ իր աջ ու ձախ կողմերում, ձորի պռնկին պառկած՝ ուշադրությամբ հետևում են սահմանը խախտողին։

Կարենը բերանը բացեց, որ հարցնի, թե ինչպե՞ս է Վազգենը կարողացել այդքան արագ իմաց տալ դեպքի մասին, բայց Սարիբեկյանը սաստեց, որ լռի։

Այնուհետև ամեն ինչ կատարվեց շատ արագ։ Սերժանտ Սարիբեկյանը ձեռքի շարժումով նշան արեց երկու ընկերներին, ապա նրանք երեքը միասին կայծակի արագությամբ վեր թռան ու ավտոմատները պարզած վազեցին դեպի անծանոթը։

— Ձեռքերդ վե՛ր,—գոռաց սերժանտը։

Անծանոթը մի պահ միայն տատանվեց, բայց տեսնելով իրեն նայող երեք ավտոմատների սպառնալի փողերը, դողահար բարձրացրեց ձեռքերը։

Կարենն էլ իրեն հերոս զգալով՝ վեր թռավ տեղից ու մի փոքր առաջ գնալով, սկսեց դիտել։ Անծանոթին մի քանի ակնթարթում խուզարկեցին, գրպաններից հանեցին ատրճանակ, փամփուշտներ, լուսանկարչական ապարատ, զանազան գործիքներ, թղթեր…

Հետո մինչ երկու սահմանապահները թշնամուն ուղեկցում էին, սերժանտը մի քարի նստեց ու, ժպտալով, մոտ կանչեց Կարենին։

— Դու ինչու՞ էիր նրան հետևում,—հարցրեց սերժանտը։

— Ինչպե՞ս թե,—զարմացավ Կարենը։—Ախր ամեն բանից երևում էր, որ սահման խախտող է։

— Բայց այդպես հետևելով ի՞նչ կարող էիր անել։ Դու պետք է նրա հետքը լավ նայեիր, ապա մեզ իմաց տայիր, իսկ մենք շներով նրան կբռնեինք։

— Բայց չէ՞ որ ես Մոխրիկին ուղարկել էի…

— Ի՞նչ Մոխրիկ,—իր հերթին զարմանալով, հետաքրքրվեց սերժանտը։—Մոխրիկն ո՞վ է։

— Մոխրի՞կը,—փորձեց բացատրել Կարենը, բայց այդ ժամանակ շան ուրախ կլանչոցն ու հաչոցը գրավեց նրա ուշադրությունը։

Մոխրիկն էր։ Նա պոչը ուրախ շարժելով, ատամների մեջ բռնած մի սպիտակ թուղթ ու Կարենի պայուսակը, նայում էր նրան հաղթական, հպարտ, որ կատարել է իրեն հանձնարարությունը։

— Այ,—ասաց Կարենը,—Մոխրիկը սա է։ Ես սրա միջոցով Վազգենին գրություն եմ ուղարկել։

Այդ էլ եղել Վազգենի պատասխանն է։

Նա շան ատամների արանքից վերցրեց գրությունը և վախած մեկնեց սերժանտին։

Սերժանտը երկար-երկար նայեց, ապա սկսեց ծիծաղել։

Կարենը տարակուսած նայում էր։

Շատ ուրախ մարդ էր այդ սերժանտը։ Նրան լավ գիտեր Կարենը, բայց և այնպես զարմացել էր։ Ի՞նչ կար այդքան ծիծաղելու։

Վերջապես Սարիբեկյանը Կարենին մեկնեց գրությունը։ Ալ ինչ բան, դա հենց իր գրածն էր։ Ախ, Մոխրիկ... Կարենը հանդիմանանքով նայեց շանը, բայց նույն միջոցին նրա աչքին ընկավ թղթի հակառակ կողմը։

Վազգենն իր կանոնավոր, վարժ ձեռագրով գրել էր. «Ի՞նչ ես հիմար-հիմար խզբզել։ Ոչինչ չհասկացա։ Վայը չէ՛, մյուս օրվանից վերջապես կազատվեմ քեզանից։ Երեկ բոլոր դասերն էլ այդպես սխալ-մխալ ես խնաց անում ինձ»...

Կարենը անմիջապես կարմրեց։

Նրա կարմրելու պատճառն իմանալու համար բավական կլինի, որ ամենքդ էլ կարդաք այն երկտողը, որ նա ուղարկել էր ընկերոջը։ Ահա՝ «Վազգեն սաման դաոնխի ես հետևեմ է...»

Լավ, բավական է, էլ մի կարդացեք։ Մարդու վրա այդքան ծիծաղելն էլ մի բան չէ։ Մանավանդ որ այդ պատահել է շատ վաղուց։ Այնքան վաղուց, որ կարիք չկա հիշելու։ Այդ ժամանակից հետո Կարենը շատ-շատ է փոխվել։ Նա գլխի ընկավ, որ լավ սովորելը պետք է ոչ թե «հինգեր» ստանալու, այլ կյանքի համար։ Եթե կարգին գրագետ լիներ, հո՞ ամեն ինչ կկարողանար հասկացնել ընկերոջը, ինչպես հարկն է։ Ուրեմն հայրենիքին պետք գալու համար հարկավոր են նաև գիտելիքներ, հարկավոր է լավ իմանալ լեզուն, այ թե ինչ...

Դե հո տվեք այդ գրությունը, որը ես այս էլ ինչքան ժամանակ է պահում եմ։

Դեռ լավ է, որ սահմանապահները իրենք էլ էին տեսել սահմանի խախտողին և հետևել էին նրան, որ հարմար մի տեղ բռնեն։ Թե չէ...

Բայց եկեք էլ խոսքներիս զոռ չտանք։ Մանավանդ որ հիմա Կարենը կարգին սովորում է։

Բայց երբ հիշում եմ... դե, ինչպե՞ս ասեմ։ Լավ, եկեք մի անգամ էլ ծիծաղենք ու մոռանանք պատահածը։ Հիշենք մի վերջին անգամ, թե ինչպես էին նրանք՝ Կարենն ու Մոխրիկը գլուխները կախ վերադառնում տուն։ Դե, Մոխրիկը խելացի շուն է, ճիշտ է, բայց չէր հասկանում, թե ինչու է տերը այդպես ամոթահար։ Միայն թե համերաշխության համար ինքն էլ էր ամոթահար ու գլխիկոր քայլում և իսկի բթի տակ, գետինն էլ չէր հոտոտում։

Ահա բոլորը։

# Շփոթված թիթեռնիկը

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Արևն այսօր շուտ է ծագել,
Եվ ավելի վառ է շողում.
Ծտերն այսօր շուտ են զարթնել,
Թռչկոտում են ու ճռվողում։

Չլինի՞ թե խաղալու են
Կանչում նորից մեր Միսակին,
Բա չե՞ն նայում ծիտիկները
Նրա ձեռքի պայուսակին։

Կարկաչում է վճիտ առուն,
Վազում արագ ու հեհեև.
Թիթեռներն են ուրախ պարում,
Ծաղկից-ծաղիկ թռչում թեթև։

Նրա՞նք էլ են սեպտեմբերին
Դպրոց գնում ընկերներով.
Ո՛չ, երազուն մանուկներին
Ճանապարհ են դնում սիրով։

Եվ գալիս են ամեն կողմից
Ծաղիկների պես ցողաթաց,
Ներս են մտնում փունջ-փունջ նորից
Մեր դպրոցի դռներով բաց։

Ու լայն բակը ասես հանկարծ
Փոխվում է մեծ ծաղկանոցի.
Ո՞ր դաշտում կա ծաղիկ այդքան,
Որքան բակում մեր դպրոցի։

Ցողաթաթախ ծաղիկնե՞ր են,
Թե՞ ծիծառներ ժիր-թռվռուն,
Որոնց շնչից սեպտեմբերը
Միանգամից դարձավ գարուն։

Թիթեռնիկն էլ, նայեցե՛ք մի,
Շփոթվել է, այստեղ թռել
Ու Հասմիկի վարդակարմիր
Ժապավենին հանգիստ թառել...

Նկ. ՍԵԴԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



ԱՌԱՎՈՏ Սուրեն Ստեփանյան

# ՓՆՋԱՆԿԱՐ

(Պոեմ իրական)

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



1

Մեծացել է գյուղը այնքան,
Փոքրացել է դպրոցը հին.
Ու երբեմնի գյուղի հսկան՝
Հիմա թզուկ կայած գետնին.
Խեղճացել է
Նոր շենքերի շվաքի տակ.
Թեկուզ անունը՝ միջնակարգ...
Իսկ նոր շենքը՝ եռհարկանի,
Մի պատկեր է, բայց անավարտ.
Ցավում է մարդ,
Բայց... ցավելով շենք կկանգնի.

2

Ամառ էր, տոթ.
Մինչ ալևոր Հայրո քեռին
Խոնարհվել էր տաշված քարին,
Մի առավոտ
Խայտաբղետ մի բրիգադ
Եկավ կանգնեց վարպետի մոտ...
Նայեց վարպետն ու հարցրեց.
— Պիոնե՞ր եք, թե՞ կոմսոմոլ...—
Ու չմնաց անպատասխան.
— Երկուսից էլ, դուք էլ մեզ հետ,
Կլինի և կուսակցական...—
Հայրո քեռին հարցրեց սակայն.
— Բան-ման գիտե՞ք...
— Պրակտիկումում անցել ենք մենք...
— Չեմ ճանաչում,—Հայրո քեռին
Իրեն մի պահ չիմացողի տեղ է դնում,—
Պրակտիկումն ո՞վ է, տղերք...
— Փործաժամը...
— Էդ հասկացանք... Հայերենը մաքուր պահեք.
Չարչարվում ենք, դպրոց շինում,
Որ մեր հայոց լեզուն այնտեղ
Ապրի, ինչպես հավքը բնում...
Դե, շատ ապրեք,—ասաց Հայրոն,—
Նայեց շարքին, հաշվեց վերջից.
— Էս յոթը՝ ինձ...

3

Յոթը տղերք, յոթն էլ տոկուն,
Հայրո քեռուն թև ու թիկունք.
Սրանք այստեղ,
Մնացածներն ամեն հարկում.
Մի իսկական կարուսել է՝
Բակից մինչև հարկը երրորդ
Եռուզեռ է.
Մեջքն ուղղեց քեռի Հայրոն...
Չէ՛, չի լինում,
Վարպետները ետ են մնում։
Էլ չեն ասում, թե ցեխ կրեք,
Էլ չեն ասում, թե քար բերեք,
Դեռ սաստում են.
— Ա՛յ, մրջյուններ, քիչ համբերեք...—
Վարպետ Հայրոն
Դասախոս է դարձել կարծես։
Այնքա՜ն հարցեր...
— Սրանք ոչ թե օգնողներ են,
Այլ, ազնիվ խոսք, կազմակերպված խանգարիչներ...
Բայց ի՞նչ արած,
Սա և՛ շենքի կառուցում է,
Ե՛վ կառուցման ուսումնարան։
Հետզհետե հարցերն ասես պակասում են.

Ոչինչ, որ դեռ աշակերտ են՝
Կեսը՝ դեռ խակ, կեսը՝ հասուն,
Կարևորը՝ գրագետ են,
Ասած խոսքը տեղ է հասնում...—
Նախագահը եկավ նայեց,
Սեղմեց ձեռքը ընկերների:
Ինչքա՜ն շատ են:
— Կեսը գնա ծիրանքաղի։—
Տղաները իրար անցան.
— Աղջիկներին կուզեք, տարեք:
— Կեսն էլ գնա աշնանացան։—
Վարպետ Հայրոն գլուխը կախ քար է
շարում,
Ուրախանում,
Այսքան ջահել,
Բայց լավ գիտեն շինարարի հարգն
աշխարհում։



4

Սնդիկ Մկոն
Սառը ջուր է բերել աղբյուր—Արևշատից.
Դա էլ է գործ:
Տորք Արտաշը սրբատաշ է դրել պատին,
Միայն թե դեռ շատ է անփորձ
Եվ ամոթից չի հարցնում նա վարպետին,
Այլ Գուրգենին՝ «Ուրբաթախոս»։
Արամը դեռ չի հավատում իր աչքերին,
Որ կարող է այսպես ձև տալ անտաշ
քարին։
Վաչեն, ոնց որ դասարանում
Դաս պատմելիս,





Խառնում է միշտ բայ, գոյական
Ու խոնարհում,
Հիմա ասես տեղն իր գտել,
Հիանալի... ցեխ է անում:
Կարոն էլ իր գործին անցել,
Նա վարպետի աչքն է դարձել։
— Կարո, մի տես թելն ուղի՞ղ է անցնում
պատով:
Անկյունաքարն ո՞վ է դրել,
— Խորենը, ո՜վ...—
Կարոն, ճիշտ է, աչալուրջ է,
Բայց սիրում է մի քիչ փչել.
— Տեղն ուղիղ է, անկյունաքարն՝
հիանալի...—
Հալևորը ծիծաղում է.
— Ես գործին եմ վաթսուն տարի,
Դեռ մի անգամ ես չեմ ասել՝ հիանալի...
Քարը քարին նոր եք դնում
Ու ձեզ գովում...
Քանդի՛ր, Խորեն, նորից շարիր...
Ասածն-ասած. վերջ, կատարի՛ր։
Առարկությո՞ւն.
Վարպետի մոտ այդ չի անցնում։—
Եվ ամեն օր յոթ ընկերներ
Քննություն են կարծես հանձնում...

5

Հուլիսն անցավ. քափ ու քրտինք։
Արևն ամպե թրջած մի շոր
Դրած ճակտին,
Առավոտյան կրկին նայեց
Հայրո քեռու բարձր պատին...
Որ կողմ նայեց՝
Մեծի, փոքրի շարժուն ձեռքեր.
Ասես նրանց գուրգուրանքից
Ծաղկի նման շենքը բացվում, ձգվում է
վեր...
Սակայն յոթնյակն այնտեղ կանգնած
Ո՞ւմ է սպասում:
Վարպետ Հայրոն այս ո՞ւր մնաց։
Չհամբերեց անգամ Գուրգենն
«Ուրբաթախոս».
— Երեկ լավ չէր։—
Ու հառաչեց:
Պատից իսկույն իջավ Վաչեն։
— Ես գնում եմ, դուք գործ արեք...—
Ու նա վազեց:
Վեցն էլ իրար լուռ նայեցին:
Պիտի վերջին շարքը շարել:
Սկսեցին,

Ո՞ւր ես, վարպետ,
Տղաները մոլորվել են,
Չեն կատակում էլ իրար հետ,
Ա՜խ, քեզ այնպես սովորել են...
Վաչեն եկավ.
— Խոսի՛ր, ի՞նչ կա։
— Սիրտը վատ է... դժվար թե գա...—
Արձագանքն է ասես թնդում
Ու սենյակից սենյակ մտնում։
Չեն հավատում.
Հայրո քեռին,
Ում ձեռքերը կյանք են տվել այս
շենքերին...
Չէ՛, դպրոցը մեր բախտ չունի...
Ու խորհուրդ են անում նրանք։
Երկու վայրկյան, մի քանի բառ...
Եվ միաձայն մեր Գուրգենին
Նշանակում օղակավար...

6

Վարպետները աչքի տակով
Հետևում են։
Չէ, տղերքը գործը գիտեն,
Գուրգենն ասես ջահելացած
այն վարպետն է,
Լավ են գտել...
Այսօր, սակայն, չեն համբերում,
Դեռ չէր մարել արևն այրող,
Արդեն բանթող...Ո՞ւր են գնում։
— Տեսնես ո՞նց է վարպետ Հայրոն...—
Հասան. շարքով ներս մտան տուն։
— Ներողություն... բարո՛վ, բարո՛վ...—
Վարպետն հազիվ նստեց տեղում,
Մի օրվա մեջ կես է եղել
Քեռի Հայրոն,
Երևում է, սիրտը նրան խիստ է նեղել...
Չէ՛, ժպտում է,
— Սնդիկ Սևո,
Ես քո մեղքով հիվանդացա.
Հիմա ոնց որ հաշմանդամը։
Էնքան սառը ջուր բերեցիր,
Մի քիչ լիներ, ջհանդամը...—
Կատակում է
Ու հարցեր է տալիս գործից։
Հենց որ տեսավ տղաներին,
Աչքն ու ունքը բացվեց էլի...
— Լավ կլինի,—
Ասաց Գուրգենն «Ուրբաթախոս»
Ու ժպտում է, իբրև՝ ոչինչ...
Խոսելն ուրիշ, ապրելն ուրիշ։




Երբ դուրս եկան, սրտերի մեջ
Քարացել էր ծանր մի վիշտ...

7

Թիթեղն էին զարկում շենքի,
Եվ տանիքը նման հսկա
Մի թմբուկի,
Որոտում էր գյուղի վրա...
Թիթեղագործ վարպետի հետ
Շարժվում էին յոթ աշակերտ...
Նայի՛ր, ասես գույն չէ կարմիր,
Այլ՝ բոց կրակի.
Ու վրձիններ առած մի-մի,
Առաջ էին շարժվում նրանք։
Բայց սպասեք. է՜յ, տղերք ջան,
Դուք չե՞ք տեսնում. նա է, որ կա։
Ու յոթն արագ ներքև իջան...
— Վարպե՛տ Հայրո...
— Ո՞նց է եկել...—
Եվ ուզում են գրկախառնվել,
Վախենում են կարմիր ներկել...
Սեղմում են ձեռքն ու կանչում են,
Իսկ վարպետը՝ մեղմ ու բարի,
Նայում շենքին, շշնջում է.
— Հիանալի՜...
Ա՜յ, հիմա որ հիանալի...
Թե մեռնեմ էլ, դարդ չեմ անի...—
Եվ իր գունատ շրթունքներով
Համբուրում է տղաներին...

8

Զանգը տվե՜ք։
Առաջին օր, առաջին մուտք...
Դպրոցական զվարթ մի երգ...
Դռները բա՜ց։
Ինչ լա՜վ է, երբ գիտես, որ դու
Քար ունես նոր շենքում դրված...
Ներս մտե՛ք, ներս,
Բարո՜վ եկաք։
Միջանցքի ձախ պատի վրա
Ձեզ է նայում
Մի ծաղկազարդ փնջանկար,
Ութը դեմքեր, ութը անուն՝
Մեկը վարպետ Հայրոն է մեր,
Մնացածին կհանդիպեք դասարանում...

*Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

ԽԱՅՏԱՌԱԿՆԵՐ ԵՆ - ԽԱՅՏԱՌԱԿՆԵՐ

# ՍՈՒՐԻԿԻ ՋՎԱՐԺԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ



Դասընկերները քննադատում էին Սուրիկին «երկու» ստանալու համար։

— Քո՛ պատիվը ջոկատի պատիվն է, դու հասկանու՞մ ես,— ասաց ջոկատավարը։

— Բա էլ ինչու՞ է ընկեր Կարապետյանը «2»-ներ նշանակում։

— Սուրի՛կ, դու ինչու՞ ես ուզում Գայանեի կողքին նստել,— հետաքրքրվեց ուսուցչուհին։

— Որովհետև նա միշտ իր հետ թանաք է բերում։



Գոհարիկը գովում էր խաղալիքը։

— Շատ լավն է, շատ։

— Իսկի էլ լավը չի,— ասաց Սուրիկը։

Աղջիկը զարմացավ.

— Ինչպե՞ս, ախր, քո խաղալիքն է։

—Վա՜յ, մոռացա։ Ազնիվ խոսք, շատ լավն է։

ԿԱՐԼԵՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ



Մայրիկը շուկայից սալոր էր բերել։ Սուրիկը չհամբերեց և մայրիկից թաքուն կերավ սալորներից երկուսը։

Սալորները լվանալիս մայրիկն ասաց.

— Բժիշկն ասել է, որ անլվա միրգ ուտողը կարող է հիվանդանալ։

Սուրիկը վախեցած հարցրեց.

— Մայրի՛կ, իսկ բժիշկը չասա՞ց՝ ինչպես պիտի առողջանալ։



Ուսուցչուհին մի անգամ հարցրեց.

— Ինչու՞ են գետերի վրա կամուրջ կառուցում։

Սուրիկը երկար մտածելուց հետո ասաց.

— Որպեսզի ջուրը տակով անցնի։

Սուրիկը ուսուցչի տված հարցերի պատասխանը իմանար, թե չիմանար՝ ձեռք էր բարձրացնում։

Ուսուցիչն էլ կարծելով, որ նա գիտե, մեծ մասամբ չէր հարցնում, իսկ երբ մի օր էլ հարցրեց, Սուրիկը հանգիստ ասաց.

— Թույլ կտա՞ք գնամ ջուր խմեմ։

ՀԵՆՐԻ ԲԱԴԱԼՅԱՆ





Սուրիկը պատվիրված ծրարը հանձնեց փոստի աշխատողին, որը կշռելով ասաց.

— Ձեր նամակը ծանր է, պետք է նորից երկու նամականիշ ավելացնեք։

— Չէ՞ որ այն ժամանակ ավելի կծանրանա,— զարմացավ Սուրիկը։

ԳՈՒՐԳԵՆ ԴԱԴՈՒՄՅԱՆ

# ՀՈՒՅՆ ՓԻԼԻՍՈՓԱՆԵՐԻ ՕԳՏԱԿԱՐ ԱՍՈՒՅԹՆԵՐԻՑ

### Հիմարը խելոքին ճանաչել չի կարող

Մի փիլիսոփա ասել է.

— Խելոք մարդը միշտ կհասկանա հիմարին, որովհետև նա ինքն էլ մինչև խելք հավաքելը եղել է նրա մորթու մեջ։ Հիմարը երբեք չի հասկանա խելոքին, որովհետև նա ոչ մի ժամանակ խելոք չի եղել։





### Կանխելով շատ դառնություններ...

Ալեքսանդր Մակեդոնացուն ընծա են բերում ապակյա սքանչելի ամանեղեն։ Նա շատ է հավանում այդ ամանեղենը, բայց հրամայում է բոլորը միանգամից ջարդել։ Երբ նրան հարցնում են այդ տարօրինակ կարգադրության մասին, նա պատասխանում է.

— Ես գիտեմ, որ ժամանակի ընթացքում այդ ապակյա ամանները մեկը մյուսի հետևից ջարդվելու են իմ ծառաների ձեռքով։ Եվ ամեն անգամ այդպիսի կորուստից հետո, ես պիտի զայրանամ ու վշտանամ։ Ավելի լավ չէ՞ մի ուժեղ կսկիծով հիմա ես վերացնեմ ապագայի բոլոր դառնությունների առիթները։



### Ու՞մ խելոք համարել

Մի փիլիսոփայի հարցնում են.

— Ու՞մ կարելի է խելոք համարել։

Նա պատասխանում է.

— Նրան, ով որ ձգտում է հասնել հասանելի նպատակի։

### Ամենից հարմար ժամանակը

— Ո՞ր ժամանակն է ամենից հարմար սնունդ ընդունելու համար,— հարցնում են Սոկրատեսին։

— Նա, ով ուտելիք ունի, թող այն ընդունի, երբ սովածություն կզգա, նա, ով չունի, թող ուտի այն ժամանակ, երբ ձեռք կբերի,— պատասխանում է փիլիսոփան։



### Վատ տրամադրության պատճառը

Արիստոտելին հարցնում են.

— Ինչու՞ նախանձ մարդիկ միշտ ինչ-որ բանից վշտացած են լինում։

— Որովհետև նրանց տանջում է ոչ միայն իրենց սեփական չարությունը, այլև ուրիշների առաջինությունը, — պատասխանում է նա։

### Ցանկացած աղբյուրից

Մի փիլիսոփայի նախատում են.

— Ինչքա՜ն ես նվաստացել, դու պատրաստ ես առաջին պատահած մարդուց էլ սովորել։

Նա պատասխանում է՝

— Գիտությունը այնքան թանկարժեք բան է, որ այն ձեռք բերելը անհարմար չէ ոչ մի աղբյուրից։





Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



# ՏԻԵԶԵՐՔԻ

## ԽՈՍՈՒՄ ԵՆ ԲՈԼՈՐ ՌԱԴԻՈԿԱՅԱՆՆԵՐԸ

— Ուշադրությո՛ւն, ուշադրությո՛ւն... խոսում են Սովետական Միության բոլոր ռադիոկայանները... Հինգ րոպե հետո լսեցեք կարևորագույն հաղորդագրություն...

Համբերատանջ դիկտոր Լևիտանի ձայնը դեռ չէր մարել օդում, երբ մեր Հայրենիքի ռադիոկայաններին միացան նաև աշխարհի բոլոր ռադիոկայանները։ Ոչ ոք աշխարհում չէր կասկածում, որ հաղորդվելու է արտակարգ մի լուր, և ահա աշխարհով մեկ սուրալով անցավ կարևորագույն հաղորդագրությունը։ Սովետական Միությունը դեպի տիեզերք էր բաց թողել հերթական «Վոստոկ-3» տիեզերանավը, և մայոր Անդրիան Նիկոլաևը իր պտույտներն էր կատարում երկրագնդի շուրջը։

Մոսկվայի փողոցներում և Զանզիբարի լեռների մեջ ընկած փոքրիկ գյուղի հրապարակում, գոնեյան հանքահորերում և Խուլանի Նորակառույց ավաններում, օվկիանոսներում լողացող նավերի վրա և հեռավոր Անտարկտիդայի բևեռային կայաններում մարդիկ հավաքված ռադիոընդունիչների մոտ՝ լսում էին կառավարական հաղորդագրությունը, և նրանց սրտերը լցվում էին անսահման ուրախության, օրինական հպարտության զգացմունքով։ Հիացմունքով էին լսում այդ լուրը նաև արտասահմանում՝ Ֆրանսիայի դոկերն ու Ճապոնիայի ջրկիրը, ամերիկյան հանքափորն ու Նորվեգիայի ձկնորսը, աֆրիկյան նեգրերն ու հարավ-ամերիկյան բնիկները։ Նրանք զգում էին, որ այս թռիչքը սովորական չի լինելու, որ սովետական առաջին տիեզերագնացներ Գագարինի և Տիտովի սխրագործությունից հետո, սա մի նոր քայլ է լինելու տիեզերքի նվաճման գործում։ Դեռ ես որքա՜ն չլուծված առեղծվածներ կան տիեզերքում, և այժմ արդեն աշխարհում բոլորը համոզված են, որ այդ գործը կարող են անել միայն սովետական մարդիկ։

Բայց ահա մարդիկ դեռ նոր էին սովորել Անդրիան Նիկոլաևի անունը ու սրտատրոփ հետևում էին նրա թռիչքին, երբ նորից բարձրախոսներից լսվեց.

— Ուշադրությո՛ւն, ուշադրությո՛ւն... խոսում են Սովետական Միության բոլոր ռադիոկայանները... մի քանի րոպե հետո լսեցեք նոր կարևոր հաղորդագրություն...

Մարդիկ կարծում էին, թե այդ հաղորդագրությունը լինելու է Նիկոլաևի բարեհաջող վայրէջքի մասին, բայց այդպես չեղավ, ամբողջ աշխարհը սկսեց ծափահարել տիեզերքի չորրորդ հերոսին, Պավել Պոպովիչին, որը «Վոստոկ-4» տիեզերանավով թռավ, որպեսզի տիեզերքի հեռուներում հանդիպի իր մարտական ընկերոջը, նրա հետ կողք-կողքի գնալով իրականացնի աշխարհում առաջին խմբային տիեզերական թռիչքը...

## ԽՄԲԱՅԻՆ ԹՌԻՉՔ

—«Արծի՛վ», «Արծի՛վ», ես «Բազեն» եմ, ինչպե՞ս ես լսում ինձ։

—Անդրյու՜շա, ես այստեղ եմ, քո կողքին ... լավ հիանալի եմ լսում։

Շատ առօրյա այս խոսակցությունը սակայն բոլորովին էլ սովորական չէր և միշտ կմնա պատմության մեջ որպես արտակարգ մի երևույթ։ Տիեզերական անդորրության մեջ առաջին անգամ լսվեցին մարդկային այս խոսքերը, առաջին անգամ տիեզերքում գտնվող մարդը զգաց, որ իր կողքին ևս մեկ ուրիշը կա և այդ մեկը իր ընկերն է, իր զինակիցը։

Դա արտասովոր խոսակցություն լինելուց բացի, նաև հայտնագործություն էր։ Չէ՞ որ ոչ ոք դեռ հաստատ չգիտեր, որ երկնքի անհունի մեջ գտնվող երկու տիեզերանավ կարող են խոսակցական կապ պահպանել միմյանց հետ։ Իհարկե, մեր կարդացած գիտա-ֆանտաստիկական վեպերում ու պատմվածքներում դուք նման բանի հանդիպել եք, բայց ուրիշ է ֆանտաստիկան, ուրիշ է իրականությունը։

# ՃԱՄՓԱՆԵՐՈՎ



Օրինակ, ֆանտաստիկական գրքերում դուք շատ եք կարդացել անկշռելիության մասին, գիտեք, թե այդ ինչ է նշանակում։ Ինչ կա որ, կմտածեք դուք, կքանդեմ կապերս ու ազատ լող կտամ օդի մեջ, բայց արի ու տես, որ Պավել Պոպովիչը,որ ավելի լավ գիտեր անկշռայնության մասին և նույնիսկ երկրի վրա փորձնական խցիկում, իր վրա զգացել էր երկրի ձգողականության բացակայությունը, մի փոքր շտապեց և կապերն արձակելով, գլուխն ուժեղ խփեց տիեզերանավի առաստաղին։ Դա, իհարկե, նրա համար լավ դաս եղավ և այնուհետև ավելի զգույշ էր լինում։

Իսկապես, հետաքրքիր բան է անկշռայնությունը։ Եվ Անդրիան Նիկոլաևիչը ու Պավել Պոպովիչը հաճախ էին արձակում իրենց նստաթոռին գամող կապերը, զանազան փորձեր էին կատարում։ Դրանցից նայում էին դուրս և տեսածի մասին գրառումներ էին կատարում նավամատյանում, կինո- նկարահանումներ էին կատարում։ Մի անգամ Պոպովիչը դիտանցքից դուրս նայելիս, տեսավ, որ իրեն բոլորովին մոտիկ մի փոքրիկ լուսին է երևում և իսկույն հասկացավ, որ դա իր ընկերոջ տիեզերանավն է։ Նույնը տեսավ նաև Նիկոլաևը, և նրանց մտքով անցավ բոլորովին մոտենալ, միացնել տիեզերանավերը և միասին թռչել։ Դա, իհարկե, հնարավոր էր անել, սակայն նրանց ծրագրում նման բան չկար։

Անցնում էին ժամերը իրար հետևից, և տիեզերագնացներն այդպես կողք-կողքի թռչելով՝ կտրում էին տիեզերական տարածությունները, այնտեղից հետևում մեր երկրի գեղեցկություններով՝ նկարահանում արշալույսներն ու մայրամուտները, աստղերն ու լուսինը, չափումներ ու գիտական հետազոտություններ էին կատարում։

Արդեն քնելու ժամանակն էր, և նրանք երկուսն էլ որոշեցին մի անգամ ևս նայել հարազատ Երկրին։ Ներքևում, Երկրի վրա հսկայական կրակե լեզուներ էին բոցկլտում, կարծես թե հսկայական հրդեհ էր բռնկվել, որ մերթ ընդ մերթ պռթկում էր ու շլացուցիչ կայծեր արձակում։

— Դու տեսնո՞ւմ ես,— հարցրեց «Վոստոկ—3»-ի հրամանատարը։

— Տեսնում եմ,— պատասխանեց նրա տիեզերական հարևանը։

Բայց ի՞նչ էր կատարվում։ Մի՞թե Երկրի վրա ինչ-որ արտակարգ բան էր տեղի ունենում։ Իհարկե, ոչ։ Մենք բոլորս էլ տեսել ենք, թե ինչպես է կայծակը խփում, ճայթում ամպրոպը, բայց այդ բոլորը ներքևից։ Այժմ տիեզերագնացները վերևից էին տեսնում մեզ համար սովորական այդ երևույթը, որը բոլորովին այլ տեսք ուներ։

Հետո նրանք քնեցին հանգիստ, տիեզերական քնով, որպեսզի հաջորդ օրը սկսեն իրենց առօրյա աշխատանքը։

## ՍՊԱՍՈՒՄ ԵՆՔ ՁԵԶ ԵՐԿՐԻ ՎՐԱ

Իսկ Երկրի վրա անհամբեր սպասում էին նրանց։ Բոլոր ռադիոընդունիչներն ու բարձրախոսները միացված էին։ Մարդիկ նոր լուր էին ուզում լսել իրենց հերոսների մասին։ Նրանք ուզում էին խոսել, սրտի ջերմ խոսք ասել տիեզերական եղբայրներին, և ահա հեռավոր տիեզերանավերում լսվում է Նիկիտա Խրուշչովի ձայնը։ Նա առանձին-առանձին շնորհավորում է հերոսներին, հաղորդելով սովետական մարդկանց սրտի խոսքը։

— Շատ ուրախ եմ, որ լավ եք զգում ձեզ, ուրախ եմ, որ բոլոր սարքավորումները աշխատում են անխափան։ Ողջունում եմ ձեզ և հպարտանում, որ այսպիսի մի պատմական թռիչք կատարելով, դուք արիություն ցուցաբերեցիք,— ասաց նա Անդրիան Նիկոլաևին, իսկ հաջորդ օրը կապվելով Պոպովիչի հետ, ասաց.

— Երկիրը ցնծում է և սպասում է ձեզ իր հողի վրա, որպեսզի գրկի ձեզ ու ձեզ հետ միասին հաջողության համար ուրախանա։

— Շատ շնորհակալ եմ, Նիկիտա Սերգեևիչ, բարի խոսքի համար։ Ամեն ինչ լավ կանենք, ինչպես ուսուցել են անում, ինչպես անում են սովետական մարդիկ,— պատասխանեց տիեզերագնացը։

Օգոստոսի 15-ին խիզախ տիեզերագնացները բարեհաջող վայրէջք կատարեցին նախատեսված վայրում։ Անդրիան Նիկոլաևը չորս օրվա ընթացքում այնքան ճանապարհ անցավ, որ կարող էր երեք անգամ հասնել Լուսին ու վերադառնալ, իսկ Պավել Պոպովիչը երեք օրվա իր թռիչքի ընթացքում կարող էր նույն ճանապարհն անցնել երկու անգամ։

# ՆՐԱՆՔ ՊԻՈՆԵՐ ԵՆ ԵՂԵԼ

Չուվաշական Շորշելի գյուղը և Ուկրաինական Ուզին ավանը հազարավոր կիլոմետրերով հեռու են իրարից, բայց երկուսում էլ ապրում են սովետական մարդիկ, երկուսում էլ ծնվում են երեխաներ, վազվզում փողոցներում ու պիոներական փողկապ կապած՝ շտապում դպրոց։

Անդրիան Նիկոլաևն ու Պավել Պոպովիչը սովորական երեխաներ էին, պիոներներ։ Անդրիանի մայրը՝ Աննա Ալեքսեևնան որդու մասին այսպես է պատմում.

— Բոլոր երեխաների նման տղա էր՝ անհանգիստ, չարաճճի։ Ձմռանը մյուս երեխաների հետ սահնակ էր քշում, դահուկում, ուրախանում։ Երբ մի քիչ մեծացավ, հայրը նրա համար դահուկներ պատրաստեց։ Ամբողջ օրը սահում էր դահուկներով։ Գարնանը տուն էր գալիս բոլորովին թրջված, իսկ ամառը սիրում էր ձի քշել։

Այո՛, սովորական մի երեխա էր Անդրիանը, բայց ազնիվ էր, պարտաճանաչ և հիանալի էր սովորում։

Մի անգամ դպրոցում ուսուցիչը պատմեց Ցիոլկովսկու մասին, ասաց, թե նա ինչպես էր երազում տիեզերական նավեր արձակել ուրիշ մոլորակների վրա։ Բոլոր երեխաները լուռ լսում էին ուսուցչին, իսկ դասերից հետո որոշեցին հրթիռ պատրաստել։ Իհարկե, նրանց պատրաստած հրթիռը հեռու էր կատարյալ լինելուց, բայց ամբողջ գյուղի աչքի առաջ այն բարձրացավ երկինք։ Մյուս բոլոր երեխաների նման փոքրիկ Անդրիանը մտքով սլանում էր աստղերի ճանապարհներով, բայց այն ժամանակ նա չգիտեր, որ դառնալու է տիեզերքի առաջին նվաճողներից մեկը։

Այդպես էր նաև Պավելը՝ ուրախ, չարաճճի, բայց և ուշադիր ու համառ։ Նա ևս երազում էր օդաչու դառնալ, ճեղքել երկնքի կապույտը, բայց միայն երազելով ոչինչ դուրս չի գա։ Նրանք սովորում էին համառորեն, պայքարում էին գիտելիքներ ձեռք բերելու համար։ Եվ այդ էր պատճառը, որ նրանց պատանեկան երազները իրականացան






Դ. ԲԵՅԹ
(Անգլիացի գրող)

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

*Երբ ընդամենը չորս տարեկան ես, յոթ տարին քեզ հարյուր է թվում, իսկ հինգ մատնաչափը՝ մի ամբողջ մղոն։*

*Բենը յոթ տարեկան է, իսկ ես՝ չորս. դրանից բացի, հինգ մատնաչափ էլ բարձր է ինձնից։ Բենը հագնում է վելվետե շալվար, որի հետևում կաշվե մեծ կարկատան կա, ոտքերին արդեն սև մազեր են ծլում, և որ ամենակարևորն է՝ եղջերակոթ մի դանակ ունի՝ խցանահանով ու էլի ինչ-որ սուր բանով, որը նա «մախաթ» է անվանում։*

*— Հենց որ ցանկապատն անցնենք,— ասաց Բենը,— տատասկաթփերին կհասնենք, իսկ հետո այն տեղը կընկնենք, որտեղ շա՜տ-շա՜տ թունավոր հատապտուղներ կան։ Դու զգույշ կաց, հանկարծ չուտես, հա՞, թե չէ կմեռնես։ Մի անգամ ես կերա և ամբողջ գիշերը մեռած պառկեցի։*

*— Ճի՞շտ։*

*— Ճիշտ, ամբողջ գիշերը։*

*— Իսկ ի՞նչ բան է մեռած լինելը, ի՞նչ ես զգում այդ ժամանակ։*

*— Սկզբում փորդ սարսափելի ցավում է,— ասաց Բենը,— իսկ հետո գլխումդ զրնգոց է սկսվում. զը՜նգ-զը՜նգ, զը՜նգ-զը՜նգ...*

*— Իսկ սիրտդ խառնվո՞ւմ է։*

*— Այո՛, ամբողջ ժամանակ,— ասաց Բենը,— իսկ ննջարանի առաստաղին փոքրիկ ծերունիներ են երևում։ Նրանք պարում են և վրադ ծիծաղում։ Ճիշտ այնպես, ինչպես իմ քեռին, երբ կոնծած տուն է գալիս։*

*— Ես մեռնել չեմ ուզում,— ասացի ես։*

*— Ուրեմն թունավոր հատապտուղներ մի՛ կեր։ Դու գիտե՞ս դրանք ինչ բան են, գիտե՞ս։*

*— Ո՛չ...*

*— Դե ուրեմն, լսիր։ Դրանցից մի քանիսը կարմիր են լինում,— ասաց Բենը,— իսկ մյուսները՝ սև։ Բայց բոլորից էլ սիրտդ խառնվում է, և փորդ ցավում, իսկ գլուխդ զրնգում է՝ զը՜նգ-զը՜նգ, զը՜նգ-զը՜նգ...*

*Ես զգացի, թե ինչպես է արյունս սառչում, և քիչ էր մնում լաց լինեի։ Երեսնիվայր պառկած էի սև հաղարջի թփերից կազմված ցանկապատի տակ, իսկ իմ վերևում, օդաստույան երկնքի ֆոնի վրա, ժամապաճների սպիտակած կմախքների նման ցցվել էին վայրի գազարի ցողունները։*

*— Էլ ինչի՞ ենք սպասում,— հարցրի ես։*

*Բենը հանեց դանակը և մախաթը բացեց։*

*— Ես ուզում եմ սկզբում տեսնել՝ լրտեսներ չկա՞ն այնտեղ,— ասաց Բենը։ — Դու այստեղ մնա։*

*— Իսկ երկա՞ր պիտի սպասեմ։*

*— Մինչև որ ետ սողամ,— ասաց Բենը,— իսկ դու պառկիր և մի՛ շարժվիր, մի՛ գոռա, հետևիցս մի՛ նայիր և զգո՛ւյշ, թունավոր հատապտուղներ չուտես։*

*— Ո՛չ... ո՛չ,— ասացի ես։*

*Բենը դանակն այնպես փայլեցրեց, որ մախաթը ճեղքեց թփերի կիսախավարը։*

*— Դու Օսյային ճանաչո՞ւմ ես,— հարցրեց նա։*

*— Իհարկե, այն էլ ինչպե՜ս,— ասացի ես։*

*Օսյան ճագարի շրթունք ուներ և քայլում էր հենակներով, քարշ տալով մի ոտքը։ Ես միշտ խղճում էի նրան։ Բենը շարունակեց.*

*— Իսկ ինչո՞ւ է Օսյան այդպիսին, գիտե՞ս. որովհետև նա սկսեց իջնել և նախապես չնայեց, լրտեսներ կա՞ն արդյոք, թե՞ ոչ... Եվ այդպես, նրան բռնեցին ու հաշմանդամ դարձրին։*

*— Ո՞վ բռնեց։*

*Բենը ինձ մենակ թողած՝ սողում էր ծնկների վրա, մախաթն արևի տակ փայլեցնելով։*

*— Թունավոր վհուկները,— ասաց նա.— նրանք,*

որ ապրում են այնտեղ, հենց այն տանը, որի մասին ես քեզ արդեն պատմել եմ: Դե՛, այն երկու վհուկներն էլի, որոնց հիմա պիտի գնանք տեսնենք:

Բենը առաջ սողաց: Նրա շալվարի կաշվե շագանակագույն կարկատանը միանգամից կորավ իմ տեսադաշտից: Աչքերս փակած, մենակ պառկել էի թափված տերևների վրա և աշխատում էի ականջ դնել արտույտներին: Միշտ, երբ դաշտում մենակ էի լինում, նրանց երգն էի լսում: Բայց հիմա արդեն սեպտեմբերը մոտ էր, և արևի տակ խանձվող խոտերի միջից ծղրիդների ճռճռոցն էի լսում միայն:

Ուղիղ հիսուն տարի անցավ, մինչև Բենը հետ եկավ: Ես հաստատ գիտեմ, որ հիսուն տարի էր, որովհետև անընդհատ հաշվում էի:

— Ոչ մի հետք չկա,— ասաց Բենը:

— Թունավոր հատապտուղներ չեմ կերել...

— Հապա մի լեզուդ հանի՛ր:

Լեզուս փախցած մողեսի պես դուրս ընկավ: Բենը խոշոր և չռված աչքերով նայեց բերանիս մեջ և ասաց.

— Դե լավ, գնա՛նք: Սը՜սս... մի՛ շնչիր:

— Իսկ դա հեռո՞ւ է այստեղից:

— Օ, հեռո՜ւ, հեռո՜ւ... մի քանի մղոն,— ասաց Բենը: — Սկզբում արահետով կիջնենք ներքև, կանցնենք կովանոցի կողքով, կկտրենք առվակը, իսկ հետո դեպի վեր, Աբբի Դուբիի տակով կանցնենք...

Ես չգիտեի, թե ինչ բան է այդ Աբբի Դուբին:

— Դա կամրջի պես մի բան է,— ասաց Բենը,— իսկ դրա տակ մութ է: Մի խոսքով...

— Եվ թունավոր վհուկներն ապրում են այնտե՞ղ:

— Ո՛չ, նրանք հենց դրա հետևում են ապրում,— ասաց Բենը: — Մենք կթաքնվենք Աբբի Դուբիի տակ, իսկ հետո գաղտագողի կարող ես նայել պատուհանից և տեսնել նրանց:

Երբ հաղարջի թփերի կիսախավարից դուրս եկա և թաքուն մոտեցա արահետին ու անցա մուգ կապույտ պտուղներով ծածկված տատասկաթփերի կողքով, սարսափից ինձ թվաց, թե երակներս սրտիս շուրջը կծկվեցին, դարձան հանգույցներ:

Մի անգամ ես փորձեցի իմ ու Բենի միջև եղած տարածությունը կրճատել և նրա կողքով գնալ հենց այնպես, ընկերակցության համար... Բայց նա իսկույն վրաս ուղղեց իր մախաթը և ասաց.

— Դու հետևի՛ցս արի: Ես հրամանատար եմ: Ես ճանապարհը գիտեմ, հասկանո՞ւմ ես: Եվ ես պարտավոր եմ առաջինը գնալ այնտեղ, որպեսզի տեսնեմ՝ ամեն ինչ կարգի՞ն է: Թե չէ, գիտե՞ս, նրանք կարող են քեզ բռնել, դու հասկանո՞ւմ ես:

— Այո՛, Բեն, այո՛...

Քիչ հետո առվակով անցանք այն տեղը, որտեղ ոչխարներ են լվանում: Բենն ասաց.

— Ջրի՛ն նայիր: Տեսնո՞ւմ ես, տեսնո՞ւմ ես, ինչ ոսկեգույն է: Դա նրանից է, որ թունավոր է, և դու կարող ես մեռնել, եթե նույնիսկ այնտեղ միայն ձեռքերդ լվանաս:

Առվակից անմիջապես այն կողմ, կիսախավար ստվերում, հյութալի խոտով ծածկված խոնավ հողի վրա, փղոսկրի նման բարձրանում էին մոլեխինդի հսկայական հովանոցները, և Բենն ասաց, որ դրանք էլ թունավոր են:

— Հետևի՛ցս արի...— շարունակեց նա: — Հետևիցս... Կռացի՛ր: Մենք մոտենում ենք Աբբի Դուբիին...

Քիչ անց, կանգնած էինք կամուրջի աղյուսաշար սևացած կամարի տակ: Միանգամից ցրտեց: Աղյուսների միջով ջուրը ծծվում էր և կաթում ներքև: Ճեղքվածքներից ծարխոտի կանաչ ծիլեր էին երևում, իսկ Բենն ասաց, որ այստեղ բոլորից շատ ոտքեր կա՝ հեծանիվի պոմպի պես երկար-երկար եղջյուրներով:

— Օձեր էլ կան, մողեսներ էլ, առնետներ և սատանայի կառք էլ կա՝ ձիերով:



— Նրա՞նք էլ են թունավոր:

— Իհարկե: Այստեղ ամեն ինչ թունավոր է:

Ես ուզեցի կառչել Բենի բաճկոնի փեշերից, որ ծի-ծի խաղանք, բայց Բենն ասաց, որ ինքը պետք է նորից առաջ գնա և տեսնի՝ լրտեսներ չկա՞ն արդյոք: Իսկ ինձ հրամայեց դարանում մնալ:

Եվ այդպես, մեն-մենակ կանգնել էի կամարի տակ: Բայց ոչ մի խխունջ ու մողես, կամ օձ, կամ էլ ծիեր ու կարիճ չտեսա: Շուրջը, խավարում, անվերջ անձրևի նման, թույլ աղմուկով ջուրն էր կաթկթում:

Երբ վերջապես Բենը սուլեց, ես հանկարծակիի եկած ցնցվեցի և սևին տվող փոսերի միջով նետվեցի առաջ:

— Մի՛ վազիր, հարբա՞ծ ես, ի՞նչ է,— ասաց ինձ Բենը:— Նրանք կլսեն, գիտե՞ս ինչ մեծ ականջներ ունեն:

Երբ դուրս եկա արևի տակ, հավանաբար սարսափելի դողում էի, որովհետև Բենը հարցրեց.

— Դու չես վախենում, չէ՞:

— Ո՛չ,— ասացի ես,— ո՛չ: Ես փոքր չեմ:

— Տես հա՛, եթե վախենալու լինես, նրանք, միևնույն է, կիմանան: Եվ այդ ժամանակ մեզ երկուսիս պղնձե կաթսայի մեջ կգցեն:

— Իսկ դու այն ժամանակ ասացիր, որ նրանք քեզ թունավորեցին:

— Է՛հ, հետո՞ ինչ: Հենց այդպես էլ անում են,— ասաց Բենը:— Սկզբում թունավորում են, իսկ հետո եփում:

Դեռ չէի հասցրել ինչ-որ բան ասել, երբ Բենն արդեն ձեռքը առաջ պարզած՝ ցույց էր տալիս.

— Ահա... Ահա թե որտեղ են նրանք ապրում...

Առջևում, մեզանից հիսուն քայլ հեռու, կարմիր աղյուսե մի տուն էր երևում, կապույտ թերթաքարե կտուրով և սև կափարիչներով ծածկված ծխնելույզներով:



Տունը կիսաքանդ էր. տանիքի վրա թերթաքարերի մեծ մասը պակասում էր, իսկ պատուհաններին համարյա ապակիներ չկային։

Երբ մի քիչ մոտեցանք տանը, ես այգում սալորի ծառեր նկատեցի՝ արևի տակ փայլող մուգ կապույտ պտուղներով։ Հավանոցի դատարկ բակը ամբողջովին խոտով էր ծածկված, մի մեծ, կարմիր կավե կճուճ էր երևում, որի վրա շուռ տված հավանոցի նման խավարծիլի տերևներ էին ցցվել։ Թունելից հետո այստեղ տաք էր, և չորս կողմից ծղրիդների ճռճռոց էր լսվում։

Հազիվ էի ասել, որ տանը մարդ չկա, երբ Բենը վրա բերեց.

— Ըհը՛, ահա թե ինչ է մտքովդ անցնում։ Այդ վհուկներն էլ հենց ուզում են, որ դու այդպես մտածես։ Է՜հ, հիմար։

— Իսկ ինչների՞ն է դա պետք։

— Ինչների՞ն։ Նրանք ուզում են, որ դու ցանկապատն անցնես ու սալոր քաղես, և հենց սկսես քաղել, այդ վհուկները դուրս կպրծնեն ու շլնքիցդ կբռնեն։

Ցանկապատի երկարությամբ մինչև չորեքթաթ սահեցինք, սրտիս երակները սառը կծիկներ դարձան։

— Կռացի՛ր,— անընդհատ փշշացնում էր Բենը,— կռացի՛ր, որ քեզ չտեսնեն։

Հետո մենք հայտնվեցինք ուղղակի տան առջև։ Ես լավ տեսնում էի ջարդված ապակիներով պատուհանները, կտուրի մերկ գերանները և ծխնելույզների մրոտված թասակները։ Արևը մեր կողմից էր լուսավորում, և պատուհանների ջարդված ապակիները փայլփլում էին նրա ճառագայթներից։ Սալորներն այժմ ավելի մեծ ու քաղցր էին թվում, իսկ ծառերի շուրջը պտտվում էին բոռերի պարսերը։

— Եթե նույնիսկ վհուկները շլնքիցդ չբռնեն,— ասաց [illegible]նը,— միևնույն է, բոլոր սալորներն էլ թունավոր են։ Իսկ եթե տեղնուտեղը թույնից չմեռնես, ապա բոռերը քեզ խայթելով կմեռցնեն։

Հանկարծ Բենը բռնեց ուսերիցս և, վերևում ինչ-որ տեղ ցույց տալով, հուզմունքից խզված ձայնով շշնջաց.

— Նրանք այնտե՛ղ են, այնտե՛ղ։ Առայժմ նրանցից մեկն է երևում։

— Որտե՞ղ է, որտե՞ղ,— հարցրի ես։

— Վերևում, ահա այն պատուհանում, ձախ կողմից։

Ո՛չ ես, ո՛չ էլ Բենը չգիտեինք, թե որն է ձախը, որը աջը։ Բայց նա այն ձեռքով էր ցույց տալիս, որով դանակն էր բռնել, և ես աչքերս հառեցի վերին հարկի պատուհանին. այնտեղ ոչ ոք չկար։

— Դու նրան չե՞ս տեսնում,— հարցրեց Բենը։— Նա երկար, սպիտակ հյուսքեր ունի. մեծ ականջներն էլ են երևում։

Ես հերթով նայեցի բոլոր պատուհաններին և ոչինչ չտեսա։

— Նա ոչ մի ատամ չունի,— ասաց Բենը,— իսկ բերանը ամբողջովին կանաչ է։

Ես չհամարձակվեցի ասել, որ ոչինչ չեմ տեսնում, բայց հանկարծ Բենը սեղմեց իմ ուսը։

— Երկրորդն էլ է այնտեղ...— շշնջաց նա,— առաջին հարկում։ Օ՜, նա դեղին աչքեր ունի։

Սիրտս սառչում էր։ Մեջքովս կարծես մրջյուններ էին վազում։

— Պա՛հ, նրա աչքերը դեղին են,— շարունակեց Բենը։ — Մեծ, դեղին աչքեր... Ո՜ւ, ո՜ւ, կարծես բվեճ լինի...

Բայց ներքևի պատուհանները քիչ առաջվա պես դատարկ էին, և մեր շրջանի տեսանելի բաներից միակ դեղինը սավառնող բոռերի բազմությունն էր։

— Մի՞թե դու չես տեսնում,— հարցրեց Բենը։

— Ո՛չ, չեմ տեսնում...

Նա դարձավ, նայեց ինձ և քմծիծաղով ասաց.

— Հը՜մ... բա այդպես երբևէ կտեսնե՞ս։ Աչքերդ չռել ես։ Դու կկոցիր, կկոցիր։ Ահա այդպես, տեսնո՞ւմ ես։ Բվեճի նման, հասկանո՞ւմ ես։ — Բենն իր աչքերն այնպես կիսախուփ արեց, որ կարծես փոքր անցքեր լինեին։

— Բվեճները մթության մեջ կարող են տեսնել,— ասաց նա։ — Նրանք նույնիսկ կարող են տեսնել այն, ինչ որ մենք չենք տեսնում։

Ես գիտեի այդ։ Հայրս էր ասել։ Այդ ժամանակ նեղացրեցի աչքերս ինչպես բվեճը։ Ճիշտ և ճիշտ Բենի նման։

Եվ երբ նորից նայեցի տանը, ապա այնտեղ ամեն ինչ Բենի ասածի նման էր։ Ես նույնիսկ



երկու պառավ տեսա՝ բվենի նման պատուհանին նստած: Մեկը՝ վերևում, մյուսը՝ ներքևում. երկու թունավոր վհուկ: Մեկը՝ դեղին աչքերով, իսկ մյուսը՝ կանաչ բերանով և երկար, սպիտակ հյուսքերով: Երկուսն էլ սարսափելի մեծ ականջներ ունեին:

— Այժմ տեսնում եմ նրանց, Բե՛ն,— ասացի ես,— հիմա տեսնում եմ նրանց:

— Փախի՛ր, նրանք այստեղ են գալիս,— հանկարծ գոռաց Բենը,— նրանք ընկել են մեր հետևից:

Եվ մենք սարսափահար փախանք: Երբ հասանք արահետի ծայրի մեծ բացատը, Բենն սկսեց ծիծաղել: Ես էլ ծիծաղեցի:

— Մենք տեսա՞նք նրանց,— գոռաց Բենը,— մենք երկուսին էլ տեսա՞նք: Նրանք այնտեղ էին:

— Մենք տեսանք նրանց,— գոռացի և ես,— մենք տեսանք նրանց:

Բենը սկսեց գլուխկոնծի տալ խոտի վրա, ես էլ փորձեցի գլուխկոնծի տալ: Մենք անընդհատ ծիծաղում էինք, թափահարում ձեռքներս և գոռում.

— Ես նրա դեղին աչքե՞րը տեսա:

— Սպիտակ հյուսքե՞րն էլ:

— Նրանց մեծ ականջնե՞րն էլ տեսանք:

Հանկարծ մի ագռավ կռկռաց: Բենը ցնցվեց և ետ նայեց: Ես էլ ցնցվեցի:

— Արի ծի-ծի խաղանք,— ասաց Բենը: — Դե՛, ամբողջ ճանապարհը քառատրոփ մինչև տուն:

— Ես ծի կլինեմ,— ասացի ես:

Եվ քիչ հետո առջևում կանգնած՝ սանձն էի կրծում: Բենը բաճկոնիս փեշերը բռնեց, և մենք քամու նման առաջ թռանք:

— Մենք տեսա՞նք թունավոր վհուկներին,— շարունակում էր գոռալ Բենը,— նրանք ընկել էին մեր հետևից:

— Մենք տեսա՞նք թունավոր վհուկներին,— կրկնում էի ես: — Նրանք ընկել էին մեր հետևից:

— Դրանք գանք, որ իրենց հին եղունգները, միլիոն տարուց ավելի է, չեն կտրում:

— Դրանք գանք, որ իրենց հին եղունգները, միլիոն տարուց ավելի է, չեն կտրում:

Ինչ գոռում էր Բենը, այն էլ՝ ես: Երբ նա ծիծաղում էր, ես էլ էի ծիծաղում: Ինչի նա էր հավատում, ես էլ էի հավատում: Նա չէր վախենում, ես էլ չէի վախենում: Ես միայն հողմի պես թռչում էի տուն:

Երբ ընդամենը չորս տարեկան ես, յոթ տարին հարյուր է քեզ թվում, իսկ հինգ մատնաչափը՝ մի ամբողջ մղոն:

*Ռուսերենից թարգմ. ԱԼ. ԹՈՓՉՅԱՆ*




Շատ էր տխրել բադիկը,
Կեղտոտվել էր տոտիկը.
Մաճ էր գալիս, հեկեկում,
Բայց ո՛չ բակում, ո՛չ այգում,
Ջուր չէր գտնում, որ խաղար,
Խորասուզվեր ու լողար:
Այսպես անջուր ու մոլոր,
Նիհարում էր օրեօր...
Երբ վիճակը բարդացավ,
Փոքրիկ Կամոն հասկացավ,
Որ բադիկին ջուր է պետք,
Իսկույն կանչեց.—Հե՜յ, տղե՛րք,
Ընկերություն արեք ինձ,
Բադը թոշնում է տապից:—
Տղաները միացան,
Գործի անցան համարձակ:
Սաղրիկ մի փոս փորեցին,
Շուրջը քարեր շարեցին,
Հետո գետից ոչ հեռու,
Հանեցին նոր մի առու:
Ջուրը խայտեց ու հորդաց,
Լճակ կապեց ու ծփաց,
Որ բադիկը լողանա,
Ջրի կարոտ չմնա,
Ճտեր հանի թավամազ,
Պահի նրանց անվնաս:

*ԱՐՏԱՎԱԶԴ ՆԱԶԱՐՅԱՆ*

*(Մարտունու շրջան, Թազագյուղի 8-ամյա դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ)*

*Նկ. ՌՈՒԲԵՆ ՀՈՎՆԱԹԱՆՅԱՆԻ*



# ՍՈՒՐԻԿԻ ՄԵԽԸ

ԳԵՎՈՐԳ ԱԼԱԳՅՈԶՅԱՆ

Գտել էի մի մեծ մեխ.
Փնտրում էի հարմար տեղ։
Մեխեցի մեր փողոցում.
Մեկ էլ. ի՜նչ իրարանցում.—
Ավտոները կանգնեցին.
Տրամվայները շարվեցին.
Հարայ-հրոց. աղաղակ.
Մեխը տեղից թռավ բակ։



Առա մուրճը ահագին
Ու խփեցի տան շեմքին։
Քույրս դռան արանքից
Լացակումած ասաց ինձ.
— Ո՞վ է խփել շեմին ցից.
Դուրս չեմ կարող գալ տանից...—
Հսկա մեխը պոկեցի.
Ցանկապատին խփեցի։
Փիսոն կանչեց շնիկին.



# ԽԵԼՈՔ

Չինական հեքիաթ

Ժամանակով մի տղա է լինում, անունը՝ Սմա-գուա։

Մի անգամ նա գնում է հարևանի այգին և երեխաների հետ սկսում աչքակապուկ խաղալ։

Իսկ այգում արհեստական մի բլրակ է լինում։ Ամեն ոք գիտե, թե մարդիկ ինչու են այգիներում այդպիսի բլրակ սարքում. գեղեցկության համար։ Որպեսզի այգեպանի համար հեշտ լիներ ծաղիկները ջրելը, բլրակի տակ դրված էր կավե մեծ մի գուռ։

Գուռը դրված էր այնտեղ վաղուց, և ոչ ոք չէր կարծում, որ այն մի օր փորձանք կբերի։

Բոլորը տեղի ունեցավ ահա այսպես.

Երեխաները խաղում էին այգում։ Աղմըկում էին, չարաճճիություններ անում։ Չէ՞ որ աչքակապուկը շատ աշխույժ խաղ է։ Լավ է լինում, երբ փախչում ես բռնողի առջևից, և ավելի լավ, երբ ինքդ ես բռնում։

Տղաներից մեկը՝ Լյու-զուն, նույնպես աղմըկում էր, ուրախանում, վազվզում բոլորի հետ։ Իսկ հետո եկավ բռնելու իր հերթը։ Թաշկինակով կապեցին նրա աչքերը, պտտեցրին և բաց թողեցին։ Դե՛, կարող ես՝ բռնիր։

Երեխաները խաղով տարված բարձրացան բլրակի վրա։ Լյու-զուն էլ չմնաց նրանցից։ Ոչինչ չտեսնելով, ձեռքերը տարածած, նա վազեց դեպի ձայները, ընկնելով մեկ այս, մեկ այն կողմ։ Եվ հանկարծ՝ բլրակի վերջը, զառիթափ։ Ոչ ոք չհասցրեց ո՛չ բղավել, ո՛չ կանգնեցնել տղային։ Լյու-զուն ներքև գլորվեց։ Իսկ ներքևում՝ գուռն էր։

Ջըր՛մփ... փոքրիկ Լյու-զուն ընկավ ջրի մեջ։ Նա փորձեց դուրս գալ, բայց ձեռքերը չհասան։ Կանգնեց ոտքերի թաթերին, դար-



Թե կախիչի պետք լիներ,
Կուներնայինք զգեստներ...—
Մեկ էլ շենքի կատարից
Մեկը ձայն է տալիս ինձ.
— Ի՞նչ՛ ես նստել անտեղի,
Կարիք ունենք մեծ մեխի։—
Վերհան-կռունկն իր քթին,
Մեխը տարավ վարպետին։
Մուրճերը հա՜... խփեցին,
Տունը գետնին մեխեցին։
Թե իմ մեխը չլիներ,
Շենքը հիմքից կփլչեր...

Ն. Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ



Շունը կանչեց հավիկին,
Հավը կանչեց բադիկին,
Կչկչացին, ճչացին,
Ծղրտացին-ասացին.
— Ո՞վ է տվել մեզ թիկնոց
Կամ վերարկու, հովանոց։



# ՍՄԱ-ԳՈՒԱՆ

ձյալ իզուր։ Իսկ մեծերից ոչ ոք չկար։

Երեխաները հեռապառ իջան բլրակից, շըր-ջապատեցին գուռը։ Նրանք լսում էին, թե ինչպես ջրի մեջ շուռումուռ էր գալիս Լյու-գուն, բայց ոչինչ անել չէին կարող։ Վախից գունատվել էին։

Սմա-գուան իջավ բլրակից բոլորի հետ, մյուսներից էլ քիչ չվախեցավ նա, բայց իրեն չկորցրեց։ Գլուխն աշխատում էր. «Ի՞նչ անել, ի՞նչ անել, ի՞նչ անել»։

Դես նայեց Սմա-գուան, դեն նայեց, տե-սավ քարի մի կտոր։ Վերցրեց քարը, վազեց դեպի գուռը և հարվածեց նրա կավե փորին։

— Բո՜մ,—արձագանքեց գուռը։

Սմա-գուան հարվածեց ավելի ուժգին։

— Բո՜մ... բո՜մ...

Երևում է, այնքան էլ հեշտ չէ ջարդել գուռը, երբ դա անհրաժեշտ է։ Բայց դե, վերջին հաշվով, կավը կավ է, իսկ գրանիտը՝ գրա-նիտ։ Բոլորին հայտնի է, թե ինչով կարող է վերջանալ նրանց միջև ծագած վեճը։ Այն բանից հետո, երբ Սմա-գուան հարվածեց եր-րորդ, թե չորրորդ անգամ, բութ արձագան-քի փոխարեն կոտրվածքի ձայն լսվեց։ Ջարդ-ված ամանից ջուրը ժայթքեց դուրս։

Իսկ հետո երևաց նաև Լյու-գուն։ Ա՜յ թե ծիծաղելին էր նա։ Թրջված, դողահար, վա-խեցած... բայց և այնպես ողջ և առողջ էր։

Ինչ որ ճիշտ է, ճիշտ է, ամբողջ այս պատ-մության մեջ տուժեց միայն կավե գուռը։

Անհրաժեշտություն զգացվեց, որ այգե-պանն այդտեղ դնի նոր գուռ։ Ի տարբերու-թյուն հնի, այն ուներ փական։ Ո՞վ գիտի, մեկ էլ տեսար...

Ռուսերենից թարգմ. ԷԴ. ՇԱՀԻՐՅԱՆ

# ԱՆՀՆԱԶԱՆԴ ԾԻՏԻԿԸ

Փոքրիկ ծիտիկը
Մորը չէր լսում,
Ուզում էր թռչել
Ու խաղալ դրսում:
Կարծես թե բույնը
Շատ փոքր էր ու նեղ,
Որ նա չէր կարող
Բնակվել այնտեղ:
Գլուխը այնքան
Ներս ու դուրս արավ,
Որ կատուն ճանկեց
Ու նրան տարավ:
Ով որ չլսի
Խրատը իր մոր,
Փորձանքի կգա
Օրերից մի օր:





# ԽԱՂ ԱՆԵՄ

*Մաղ տվեք ինձ,*
*Մաղ անեմ,*
*Նստեմ բակը*
*Խաղ անեմ,*
*Չխանգարեմ*
*Մայրիկին,*
*Որ ճաշ եփի*
*Հայրիկին:*
*Շուտով կգա*
*Հայրիկը,*
*Ճաշ չի եփել*
*Մայրիկը:*

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ*






**ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ**



*Շապիկը՝ նկարիչ ԷԴԻԿ ԶԱՔԱՐՅԱՆԻ*


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ՍԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 10183, Պատվեր 978 Տպաքանակ՝ 8000: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 28/VIII 1962 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:*
Գինը 20 կ.



# Գորտի համերգը

Խոսք և երաժշտությունը՝ Գ. ԲՈՐՈԶԱՆԻ


















Սունկի վրա նստում եմ ես,
Մամուռի մեջ պառկում եմ ես,
Ուրախ-զվարթ երգում եմ ես.
Տրը՛նգ, տրը՛նգ, տրը՛նգ,
Տրը՛նգ, տրը՛նգ, տրը՛նգ,
Երգում եմ ես:

Ճանճ ու մժեղ, հավաքվեցեք,
Իմ համերգը դուք լսեցեք,
Դուք լսեցեք ու զարմացեք.
Ղո՛րթ, ղո՛րթ, ղո՛րթ,
Ղո՛րթ, ղո՛րթ, ղո՛րթ,
Ու զարմացեք:

Թևին տվեք, թռեք եկեք,
Մոծակներին առեք եկեք,
Բայց համերգից մի՛ ուշացեք.
Տրը՛նգ, տրը՛նգ, տրը՛նգ,
Տրը՛նգ, տրը՛նգ, տրը՛նգ,
Մի՛ ուշացեք:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

